ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Դ

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ – 2009

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Դ., Քննական պատմություն Հայոց/Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը. Եր.: ԵՊՀ հրատ., 2009.- 720 էջ + 2 ներդիր:

*Նիկողայոս Ադոնցի երկերի չորրորդ հատորն ընդգրկում է ականավոր հայագետի «կարապի երգը»՝ մահվան նախօրյակին գրված բառահատոր «Քննական պատմություն Հայոց»-ի առաջին՝ «Հայաստանի պատմություն: Ակունքները. X-VI դդ. Ք. ա.» հատորը, ինչպես նաև հայ ժողովրդի կազմավորմանը վերաբերող հոդվածները: Ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում նաև անավարտ մնացած երկրորդ-երրորդ հատորներից առանձին՝ առավել ամբողջական հատվածներ:*

*Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:*

ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 978-5-8084-1146-3



FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

**Հովհաննիսյան Պ. Հ.**
**Մադոյան Ա. Գ.**
**Ստեփանյան Պ. Գ.**

*Հատորը հրատարակության պատրաստեց*

**Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ**

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

**(հատվածներ, նյութեր երկրորդ և երրորդ հատորներից)**

## [ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ]

(Հատվածներ, նյութեր երկրորդ և երրորդ հատորներից)

### I. ՀԱՅԱՍՏԱՆԸ Ք. Ա. IV-I ԴԱՐԵՐՈՒՄ

(էջ 431)

Գրված է 1939-1941 թթ. Բրյուսելում: Աշխատանքի ստեղծման հանգամանքների, ծավալի, նյութերի ընդգրկման ու շրջանների մասին ընդարձակորեն տե՛ս աստ, էջ 5-22:

Ձեռագրի ֆրանսերեն բնագիրը, որ խորագրված է «Արևելքը Մակեդոնական կայսրության օրոք», գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, զզրոց Բ, թղթածրար 2, 142 էջ):

Նյութի բովանդակությունն ու խորագիրը միմյանց չեն համապատասխանում: Մակեդոնացիների պատմաշրջանին վերաբերում է միայն առաջին փոքր մասը՝ մինչև Արտաշես I-ը (տե՛ս սստ, էջ 429-443): Մնացյալը վերաբերում է Արտաշես I, Տիգրան I, Արտավազդ I և Տիգրան II Մեծ արքաների գործունեությանը (տե՛ս սստ, էջ 443-508): Ենթադրելի է, որ ձեռագրի մաքրագրման ընթացքում ու այն հրատարակության պատրաստելիս Ն. Ադոնցը հստակեցնելու և կարգավորելու էր խորագրերը և, բնականաբար, հարթելու էր նկատվող հակասությունը: Մենք նյութը խորագրել ենք ու բաժանել մասերի, հիմք ընդունելով բովանդակությունը: Ուստի արդարացվում է նյութի ընդհանուր խորագրի մեր առաջարկած տարբերակը՝ «Հայաստանը Ք. ա. IV-I դարերում»:

Ձեռագիր ֆրանսերեն բնագիրը գրված է 16×24 մեծության վանդակավոր 142 թերթերի վրա: Ձեռագիրը հիմնականում դյուրընթեռնելի է, սակայն կան էջեր, որ անհրաժեշտ է եղել վերծանել: Ուսումնասիրության գիտական ապարատը Ն. Ադոնցը գլխավորապես տվել է կամ բուն շարադրանքում և կամ առանձին թերթերի վրա: Սկզբնաղբյուրների և ուսումնասիրությունների խորագրերն ու հեղինակների ազգանվան ձևերը տվել է հակիրճ հապավումներով՝ հիմնականում հեղինակների սկզբնատառերով կամ գրքերի կրճատ ներկայացված խորագրերով: Այդ բոլորը, ինչպես ընդունված կարգն է, իջեցվել են տողատակ, հնարավորության դեպքում վերականգնվել են հեղինակների անվանատառերն ու գրքերի վերնագրերը, հրատարակության թվականները, վայրերն ու մեջբերումների էջահամարները:

Ֆրանսերեն բնագիրը հայերեն է թարգմանել պատմական գիտությունների թեկնածու Վ. Ա. Պողոսյանը: Նրան են պատկանում բնագրային սրբագրումներն ու ուղղումները: Հեղինակների անունների և երկասիրությունների վերնագրերի հապավված ձևերի վերականգնումը՝ նրան և խմբագրին: Հունարեն և լատիներեն հատվածները համեմատել և թարգմանել է փիլիսոփայական գիտությունների թեկնածու Օ. Ս. Վարդազարյանը, որը կատարել է նաև ամբողջ այս հատվածի խմբագրումը:

Ն. Ադոնցի բնագրից դուրս կատարված բոլոր հավելումները, որ արված են հույժ անհրաժեշտության դեպքում, առնված են ուղիղ [ ] փակագծերի մեջ, իսկ մեր ծանոթագրությունները, որոնց հերթական համարները

առնված են կլոր (   ) փակագծերի մեջ, տրվում են ծանոթագրությունների բաժնում:

# I. ՀԱՅԱՍՏԱՆԸ Ք. Ա. IV-I ԴԱՐԵՐՈՒՄ

## 1. Արևելքը [և Հայաստանը] մակեդոնական կայսրության օրոք

Մակեդոնական բանակն ափ է իջել Փոքր Ասիայում 334 թ. գարնանը: Միսիայով հոսող և Պրոպոնտիս [Մարմարի ծով] թափվող Գրանիկոս գետի ափին շարված [պարսից] արքայից-արքայի զորքերը պատրաստ էին կասեցնելու դրա ափհանումը: «Հելլեսպոնտոսը պատվազուրկ կլինի, եթե մենք չհանդգնենք հատել Գրանիկոսը»,– ասել է Ալեքսանդրը և գրոհել պարսից բանակի վրա: Նա շահել է առաջին և կարևոր հաղթանակը: Դասկիլեայի մեծ սատրապությունն անցել է Ալեքսանդրի կողմը: Սարդեսի բերդակալ Միթրենեսն առանց դիմադրության բերդամրոցը հանձնել է Ալեքսանդրին: Նա այլևս կազմակերպված ուժեր չուներ, որոնք ի վիճակի լինեին պաշտպանելու [պարսից] արքայի տիրույթները Փոքր Ասիայում: Հաղթողը շարժվել է դեպի Կիլիկիա: 333 թ. աշնանը Իսսոսում տեղի է ունեցել երկրորդ մեծ ճակատամարտը: [Պարսից բանակն] անձամբ ղեկավարող Դարեհ [III Կոդոմանոսը] մատնվել է խուճապի և դիմել փախուստի: [Հին պատմիչները] հավաստիացնում են, թե պարսից բանակի թիվը հասնում էր մինչև երեք հարյուր հազար հետևակայինի և հեծյալի: Այն ընդգրկում էր տարբեր ազգերի և ի շարս այլոց՝ հայերի (քառասուն հազար հետևակային և յոթ հազար հեծյալ) զորքեր:

Իսսոսի հաղթանակը նվաճողների առջև բաց է արել Ասորիքի դարպասը և դեպի Եգիպտոս տանող ճանապարհը: Ալեքսանդրը վարվել է զգուշորեն՝ ուղղություն վերցնելով դեպի Ասորիք ու Եգիպտոս. այս երկրների նվաճումից հետո ձեռք բերել հուսալի հենարան՝ այդուհետև վստահորեն խոյանալու լինելու դեպի պարսից տերության կենտրոնը: Դարեհի համար ամենաճակատագրական՝ երրորդ ճակատամարտը տեղի է ունեցել [331 թ. հոկտեմբերի 1-ին] Արբելայի հովտում՝ Գավգամելայում, որը հեռու չէր նախկին մայրաքաղաք Նինվեից: Բախտն արդեն շրջվել էր մեծ արքայից. նա գլխովին ջախջախվել է և դիմել փախուստի՝ դեպի Արևելքի նահանգները: Պարսից բանակի թիվը հասնում էր քառասուն հազար հեծյալի և

հարյուր բյուր կամ մեկ միլիոն հետևակայինի, ինչն անհավանական է[1]: Ըստ մեկ այլ տեղեկության՝ հեծելազորի թիվը հասնում էր քառասուն հինգ հազարի, իսկ հետևակինը՝ երկու հարյուր հազարի. սա ավելի մոտ է իրականությանը: Բոլոր սատրապությունները՝ սկսած Կապադովկիայից մինչև հեռավոր Բակտրիանեն, ուղարկել էին իրենց զորքերը՝ համապատասխան սատրապների հրամանատարությամբ: Հայաստանը ներկայացված էր իր երկու սատրապով՝ Օրոնտես [Երվանդ] և Միթրաուստես [Միհրվահիշտ]: Ատրոպատեսը մարերի զորավարն էր: Մարերի կողքին շարված էին կադուշցիները, աղվանները և սակասենները: Կապադովկացիներին ղեկավարում էր Արիակեսը, իսկ ղեռևս արքայի տիրապետության ներքո գտնվող Ասորիքի մի մասը՝ Մազեոսը[2]:

---

[1] **Q. Curtii Rufi**, De rebus gestis Alexandri Magni libri superstites, liber III, cap. 2. **Armenii quadraginta millia miserant peditum, additis septem millibus equitum** [Հայերն ուղարկեցին քառասուն հազար հետևակային, ավելացնելով յոթ հազար հեծյալ]: Պարսից ուժերը՝ ըստ սովորության խիստ չափազանցված են, քանզի մեզ տրամադրվում է դրանց զինված ուժերի մանրազնին ցուցակը.

Պարսիկներ՝ հարյուր հազար, որոնցից՝ երեսուն հազար հեծյալ:

Մարեր՝ հիսուն հազար հետևակային, տասը հազար հեծյալ:

Բարկանցիներ՝ տասը հազար հետևակ[ային] և երկու հազար հեծ[յալ]:

Հայեր՝ քառասուն հազար հետևակ[ային] և յոթ հազար հեծ[յալ]:

Վրկանցիներ՝ վեց հազար հեծյալ:

Դերբիկացիներ՝ քառասուն հազար հետևակ[ային], երկու հազար հեծ[յալ]:

Կասպեր՝ ութ հազար հետևակ[ային], երկու հազար հեծ[յալ]:

Կասպիական ցեղեր՝ երկու հազար հետևակ[ային], չորս հազար հեծ[յալ]:

Հույներ՝ երեսուն հազար, տե՛ս նույն տեղում, [էջ 108-109]:

[2] **Arriani Anabasis**, liber III, cap. 7: Ἀρμενίων δὲ Ὀρόντης καὶ Μιθραύστης ἦρχε [Իսկ հայերի վրա իշխում էին Օրոնտեսն ու Միթրաուստեսը].

Մյուս մասնակիցներն էին՝

1. Բակտրիանացիներ, սոգդիանացիներ և հարևան հնդիկներ, որոնց հրամանատարն էր Բակտրիանայի սատրապ Բեսսոսը:

2. Սակեր, ասիական սկյութներ, որոնց ղեկավարն էր Մոակեսը:

3. Արաքոսներ (արաքոսիացիներ), հարևան հնդիկների հետ մեկտեղ՝ Բարսաենթրեսի հրամանատարությամբ:

4. Արիացիներ՝ սատրապ Սատիբարզանեսի հրամանատարությամբ:

5. Պարթևներ, վրկանցիներ և տապուրներ՝ Փրատափերնեսի հրամանատարությամբ:

6. Կարմիր ծովի առափնյա գոտու բնակիչներ՝ Օրոնտոբատեսի, Արիոբարզանեսի և Օրքսինեսի [հրամանատարությամբ]:

7. Ուքսիոններ, սուսեցիներ՝ Աբուլիտեսի որդի Օքսաթրեսի [հրամանատարությամբ]:

Մեկ այլ սկզբնաղբյուր (1) մեզ տեղեկացնում է, որ երկու թևի բաժանված պարսից բանակի ձախ կողմում, ի շարս այլոց, կային հայեր, որոնց անվանում էին «փոքրեր», իսկ աջ կողմում՝ հայեր՝ Մեծ Հայքից (2): Հարկ է նշել, որ հայերի երկրի բաժանումը Փոքր և Մեծ Հայքերի պետք է նախորդած լինի IV դարին, եթե միայն պատմիչը չի օգտագործել այն արտահայտությունները, որոնք գործածական են եղել իր ժամանակաշրջանում:

Գավգամելայի հաղթանակից հետո Ալեքսանդրը սրընթաց արշավել է դեպի տերության մայրաքաղաք՝ Բաբելոն և գրավել արքայից-արքայի գահը: Հաղթողն անարգել ուղղություն է վերցրել դեպի Սուզա [Շոշ], այնուհետև՝ Պերսեպոլիս և Պասարգադ: Այդտեղից նա շարժվել է դեպի Էկբատան՝ այնտեղ գտնվող գանձերին տիրանալու և միաժամանակ Դարեհին հետապնդելու համար: Էկբատանից Ալեքսանդրն ուղղվել է [արդի] Թեհրանի մոտ գտնվող Ռագա [Raga], ուր նրան լուր է հասել Դարեհի՝ սատրապներից մեկի կողմից նենգաբար սպանվելու մասին: Այդ պահից Պարսկական կայսրության նվաճումն ավարտված էր:

Երկու տարի շարունակ Ալեքսանդրը ջանքեր է գործադրել արևելյան նահանգների ապստամբ սատրապների դիմադրությունը հաղթահարելու և նրանց հպատակեցնելու համար: 326 թ. նա արշավանք է ձեռնարկել դեպի Հնդկաստան, որը տևել է գրեթե մեկ տարի: Ինդոսի ափով իջնելուց հետո,

---

8. Բաբելացիներ՝ Բուպարեսի [հրամանատարությամբ], ներառյալ՝ 9. հայերի, 10. կապադովկիացիների, 11. մարերի և 12. սիրիացիների [գնդերը]. բոլորը միասին՝ ներկայացնում են տասներկու սատրապություն:

**Q. Curtii Rufi**, Op. cit., liber IV, cap. 12. Քվինտոս Կուրտիոսը բանակը ներկայացնում է երկու՝ ձախ և աջ թևերի բաժանված ձևով: Ձախ թևում գտնվում էին բակտրիանացիները, դահերը, արաքոսիացիները, շուշեցիները, մասագետները, պարսիկները՝ մարդերի և սոգդիանացիների հետ մեկտեղ, որոնց բոլորին առաջնորդում էին Արիոբարզանեսը և Օրոբատը (Օրոնտոբատես). նրանց գլխավոր զորավարն Օրսինեսն էր. կասպիացիները՝ Փրադատեսի հրամանատարությամբ, հնդիկները և Կարմիր ծովի ազգությունները, ***Armenii, quos minores vocant*** [այն հայերը, որ «փոքր» են անվանվում], ապա հետևում էին բաբելացիները, բելիտները, քոսսեացիները, գորտուացիները, որոնց աջակցում էին փռյուգացիները և կատառնները. վերջապես՝ պարթևներն ու սկյութները:

Աջ թևում էին նախ և առաջ՝ հայերը. **natio majoris Armeniae** [Մեծ Հայքի բնակչությունը], հետո կապադովկիացիներն ու սիրիացիները, այնուհետև մարերը: Այս բոլորը կազմում էին քառասունհինգ հազար հեծյալ և երկու հարյուր հազար հետևակային:

Այս պատմիչի տվյալները միայն ընդհանուր առմամբ են համապատասխանում Արրիանոսի տվյալներին:

նա բռնել է եռղարձի ճանապարհը և Գեդրոսիայի անապատներով հասել Պասարգադ, իսկ այնուհետև Բաբելոն՝ 323 թվականին: Այժմ հարկ էր զբաղվել նվաճված երկրների կազմակերպման հարցով: Նույն 323 թ. [ամռանը] վրա հասած մահը նրա ծրագրերն անավարտ է թողել: Հստա-կություն չկա այն հարցում, թե ինչ հիմունքներով էր նա հաստատելու իր իշխանությունը և ինչ ձևով էր պատրաստվում կարգավորել նահանգային վարչությունը:

Ալեքսանդրի համարձակությունը նրա աչռելի [առավելություններից] էր. այն չի ունեցել, հավանաբար, որևէ այլ հենք, քան վիքխարի հաջողությունը: Թվում է, թե նրա ռազմարշավն ավելի շուտ այդ խելահեղությամբ էր պայմանավորված, որն անվանում են երջանիկ անշրջահայեցություն՝ felix temeritas, այլ ոչ թե մտածված ու կշռադատված ծրագրի արդյունքում իրականացված գործողություն: Բարեբախտությունը ցանկացել է նրան մղել մինչև աշխարհի՝ այն ժամանակ հայտնի ծայրամասերը: Նա նվաճել է անծայրածիր մի կայսրություն, առանց իրեն հաշիվ տալու այն պահ-անելու միջոցների մասին: Ժամանակին վրա հասած վախճանը փրկել է նրա փառքը: Եթե նա ապրեր ավելի երկար, կարող էր տեսնել իր ձեռնարկումի կործանումը: Գլխապտույտ հաջողությունից նա կորցրել է գլուխը, տակնուվրա է եղել նրա սիրտը՝ «Սկսելով Տրայանոսի ոգով, նա ավարտել է Ներոնի սրտով և Հելիոգաբալոսի քաղքերով»[1]: Ուստի, եթե նա ժամանակին չվախճանվեր՝ պատմության մեջ կմնար ոչ իբրև հերոս, այլ իբրև մի հնարամիտ արկածախնդիր (3):

Ճիշտն ասած, Ալեքսանդրը չի նվաճել պարսից կայսրությունը կամ դրան տիրացել է միայն այն չափով, որքան հարկ է եղել դեպի արքայից-արքայի մայրաքաղաքը ճանապարհ հարթելու համար՝ իր զինակիցներին թողնելով ավարտին հասցնելու նվաճումը: Հանձնարարությունը բավական դժվարին էր կատարելու համար: Հնարավոր չէ պնդել, թե երբ է այն ի կատար ածվել՝ նրա կենդանության օրոք, թե հետո, հնարավոր չէ խոսել նաև պարսից կայսրության՝ մակեդոնացիների կատարյալ հպատակության ներքո անցնելու մասին:

Գրանիկոսի ճակատամարտից հետո երկու սատրապություն՝ Հելես-պոնտական Փռյուգիան և Լիդիան անցել են նվաճողի տիրապետության ներքո: Սակայն հարևան սատրապությունները՝ Մեծ Փռյուգիան, Կապա-դովկիան՝ մինչև Հալիս և Հալիսի մյուս կողմում գտնվող Կապադովկիան չէին նվաճվել: Ալեքսանդրը հանձնարարել էր Անտիգոնոսին՝ հպատա-

[1] Նշել է Նապոլեոնն իր «Հուշերում»:

կեցնել Փռյուգիան և Սաբիքտաս [կոչվող] Կապադովկիան[1]: Հալիսի մյուս կողմում գտնվող Կապադովկիան Արիարաթեսի տիրապետության ներքո էր: Առափնյա երկրները՝ Բութանիան, Պափլագոնիան ևս պահպանել էին իրենց անկախությունը:

Հայաստանը գտնվում էր նույն կացության մեջ: Սկզբնաղբյուրները հավաստիացնում են, որ Գավգամելայի ճակատամարտից հետո, Բաբելոն ժամանումից ի վեր, Ալեքսանդրը Հայաստան է ուղարկել Միթրենեսին, նրան՝ ով հանձնել էր Սարդեսը[2]: Սակայն, չկա որևէ փաստ, թե Միթրենեսն իր առաքելությունն ավարտին է հասցրել: Մենք գիտենք, որ Հայաստան էր ուղարկվել մեկ այլ անձնավորություն՝ Մենոնը, որպեսզի ոսկի փնտրեր Սիսպիրիտիսի [Սպեր] տարածաշրջանի հանքերում: Բայց տեղաբնիկները հարձակվել էին նրա վրա և դուրս վռնդել[3]: Միթրենեսը կարող էր արժանանալ միևնույն ճակատագրին: Մակեդոնական նվաճումների ցուցակներում, իրոք որ, մենք որևէ տեղ Հայաստանի մասին հիշատակության չենք հանդիպում:

Ալեքսանդրը վախճանվել է: Ծավալված պայքարին հաջորդել է կայսրության առաջին բաժանումը՝ հանգուցյալ նվաճողի արքունիքի և բանակի բարձրաստիճան հրամանատարության միջև: Սատրապությունների (դրանց կառավարիչների հետ մեկտեղ) բաշխումը ներկայանում է հետևյալ կերպ.

1. Եգիպտոսը տրվել է Պտղոմեոսին՝ Լագոսի որդուն:
2. Ասորիքը՝ Լաոմեդոնին:
3. Կիլիկիան՝ Փիլոտասին:
4. Մարաստան՝ Պիթոնին:
5. Կապադովկիան և Պափլագոնիան՝ առափնյա տարածաշրջանների հետ մեկտեղ, ուր Ալեքսանդրը չէր գնացել՝ Եվմենեսին:
6. Պամփիլիան, Լիկիան և Մեծ Փռյուգիան՝ Անտիգոնոսին:
7. Կարիան՝ Կասսանդրոսին:
8. Լիդիան՝ Մենանդրոսին [Մելեագրոսին]:
9. Հելլեսպոնտական Փռյուգիան՝ Լեոննատոսին:
10. Թրակիան՝ Լյուսիմաքոսին:

---

[1] **Arriani Anabasis**, liber I, cap. 17; liber II, cap. 4.

[2] Անդ, liber III, cap. 16. κατέπεμψε δὲ καὶ ἐς ᾿Αρμενίαν Μιθρήνην σατράπην [Իսկ Հայաստան է ուղարկվել Միթրենես սատրապը]:

[3] **Strabonis Geographica**, liber XI, cap. 14.

11. Մակեդոնիան՝ Անտիպատրոսին:
12. Պարոպամիսադեսը՝ Օքսիարտեսին:
13. Արաքոսիան և Գեդրոսիան՝ Սիբյուրտիոսին:
14. Արիան և Դրանգիանան՝ Ստասանդրոսին:
15. Բակտրիանեն և Սոգդիանեն՝ Փիլիպպոսին:
16. Պարթևստանը և Վրկանը՝ Փրատափերնեսին:
17. Պարսքը [Պերսիս]՝ Պևկեստասին:
18. Կարմանիան՝ Տլեպոլեմոսին:
19. Մարաստանը՝ Ատրոպատեսին:
20. Բաբելոնը՝ Արքոնին:
21. Միջագետքը՝ Արկեսիլաոսին:
22. [Անընթեռնելի][1]:

Այս ցուցակում Հայաստանի կամ Միթրենեսի անունները որոնելը զուր է: Կարծեցյալ սատրապի մասին այլևս չի հիշատակվում: Խիստ հավանական է, որ նա զոհվել է Հայաստանում:

«Պափլագոնիան, Կապադովկիան և Պոնտոսի ամբողջ ափը մինչև Տրապիզոն» բաժին են հասել Ալեքսանդրի առաջին քարտուղարին՝ Եվմենեսին: Սակայն, այս երկրները դեռևս նվաճված չէին և դրանց թագավորն Արիաբաթես I-ն էր: Ըստ մեկ այլ սկզբնաղբյուրի՝ Եվմենեսին կարգադրված էր հսկել ամբողջ տարածաշրջանը մինչև Տրապիզոն և պատերազմել Արիաբաթեսի դեմ, որը միակն էր, ով չէր ցանկացել ենթարկվել մակեդոնական տիրապետությանը[2]: Երկու հարևան սատրապներ՝ Հելլեսպոնտական Փռյուգիայի սատրապ Լեոննատոսը և Մեծ Փռյուգիայի սատրապ Անտիգոնոսը, Պերդիկկասից ստացել էին՝ իր տիրույթում հաստատվելու գոր-

[1] **Diodori Bibliotheca Historica**, liber XVIII, cap. 3. Այս ցուցակը պատկանում է Հիերոնիմոս Կարդիացուն: Այս նույն ցուցակը Պոմպեոս Տրոգոսը վերստին ներկայացրել է մի քանի շեղումներով (**Justini historiarum philippicarum ex Trogo Pompeio liber XIII, cap. 4**): Այսպիսով նա Բակտրիանեն և Սոգդիանեն **Փիլիպպոսի** փոխարեն հանձնում է երկու այլ անձանց, առաջինը՝ Ամյունտասին, իսկ երկրորդը՝ Սկյութեսին: Նույնը վերաբերում է Պարթևստանին և Վրկանին, որոնցից յուրաքանչյուրը, Փրատափերնեսի փոխարեն, ուներ առանձին ղեկավար՝ Նիկանորը և **Փիլիպպոսը**: Նա հավելում է Հայաստանը, որը տրվել է Տլեպոլեմոսին: Վերջինս Կարմանիայի սատրապն էր: Կարմանիան շփոթվել է Հայաստանի հետ:

[2] **Q. Curtii Rufi**, op. cit., liber X, cap. 10: **bellum cum Arbate gereret. Solus hic detrectabat imperium** [Պատերազմ էր վարում Արբաթեսի դեմ. վերջինս միակն էր, որ չի ընդունել <մակեդոնական> տիրապետությունը]. թվում է, թե Արբաթեսը կարող էր լինել Արիարաթես անվան աղավաղված ձևը, հմմտ. **Արպատ**, Plutarchus՝ Artax (4):

ծում Եվմենեսին օժանդակելու հրաման: Անտիգոնոսը չէր ցանկացել հնազանդվել, իսկ Լեոննատոսը, որին կանչել էին Թեսսալիա, այնտեղ կնքել էր իր մահկանացուն:

Պերդիկկասը հարկադրված է եղել անձամբ գնալ Արիարաթեսին ընդառաջ, որի դեմ մարտնչել է և 322 թ. խաչել նրան՝ ամբողջ ընտանիքի հետ միասին: Եվմենեսը հաստատվել է իր սատրապությունում:

Չցանկանալով բաժանվել Պերդիկկասից, Եվմենեսը վստահել է քաղաքներն իր բարեկամներին, նշանակել կայազորների պետեր, ընտրել դատավորներ ու մատակարարներ և ուղեկցել Պերդիկկասին մինչև Կիլիկիա: Այստեղ Պերդիկկասը որոշել է, որ ավելի շահավետ է նրան ետ ուղարկել՝ «արտաքուստ իր սատրապությունը ղեկավարելու, սակայն, իրականում՝ սահմանակից Հայաստանի վրա իշխելու համար, որտեղ Նեոպտոլեմոսը խռովություններ էր հրահրել»[1]:

Պարզ չէ, թե Հայաստանում խռովություններ հրահրող այս անձնավորությունն ինչ կարգավիճակ ուներ: Այստեղ խոսքը վերաբերում է Փոքր Հայքին, որը սահմանակից էր Կապադովկիային, սակայն, հայտնի չէ նմանապես, թե արդյո՞ք այն ընդգրկվում էր Կապադովկիայի սատրապության մեջ: Թվում է, թե Նեոպտոլեմոսը սատրապի ենթականերից մեկն էր, զինվորական աստիճանավոր:

Միևնույն ժամանակ Կրատերոսն ու Անտիպատրոսը Հունաստանից գնացել են Փոքր Ասիա՝ Պերդիկկասի իշխանության դեմ մարտնչելու համար: Վերջինս պատրաստվելով մեկնել Եգիպտոս՝ Պտղոմեոսի դեմ պայքարելու, «Եվմենեսին նշանակել է Հայաստանի և Կապադովկիայի զորքերի գլխավոր զորավար»[2] և կարգադրել իր եղբորը՝ Ալկետասին ու Նեոպտոլեմոսին, ենթարկվել Եվմենեսին: Փոքր Հայքը միշտ ընդգրկվել է, սակայն, ստուգություն չկա, թե ինչպիսիք են եղել դրա առնչությունները Կապադովկիայի սատրապի հետ:

Նեոպտոլեմոսը դավաճանել է Եվմենեսին և անցել Կրատերոսի և Անտիպատրոսի կողմը: Նա Կրատերոսին տարել է Եվմենեսի դեմ, մինչդեռ Անտիգոնոսն ուղղություն է վերցրել դեպի Կիլիկիա, որպեսզի թիկունքից հարձակվի Պերդիկկասի վրա: Եվմենեսը մարտի է բռնվել Կրատերոսի և Նեոպտոլեմոսի հետ և նրանց սպանել ճակատամարտում: Սակայն նրա

---

[1] **Plutarchi Eumenes**. 4. λόγῳ μὲν ἐπὶ τὴν ἑαυτοῦ σατραπείαν, ἔργῳ δὲ τὴν ὅμορον Ἀρμενίαν τεταραγμένην ὑπὸ Νεοπτολέμου διὰ χειρὸς ἔξοντα.

[2] **Plutarchi**, op. cit., 5.

դաշնակից Պերդիկկասի մահվան բոքը չեղյալ է դարձրել այդ հաղթանակի նշանակությունը:

Ազատագրվելով ահեղ հակառակորդից՝ Անտիպատրոսը և Անտիգոնոսը ձեռնամուխ են եղել սատրապությունների վերաբաժանմանը, որը տեղի է ունեցել Տրիպարադիսոսում 321 թ., հետևյալ կերպ.

1. Եգիպտոս – Պտղոմեոս
2. Ասորիք – Լաոմեդոն
3. Կիլիկիա – Փիլոքսենոս
4. Միջագետք և Արբելիտիս – Ամփիմաքոս
5. Բաբելոն – Սելևկոս
6. Շուշան – Անտիգենես
7. Պարսկաստան – Պևկեստաս
8. Կարմանիա – Տլեպոլեմոս
9. Մարաստան – Պիթոն
10. Պարթևստան – Փիլիպպոս
11. Արիա և Դրանգիանա – Ստասանդրոս
12. Բակտրիանե և Սոգդիանե – Ստասանոր
13. Արաքոսիա
14. Պարոպամիսադես
15. Հյուսիսային Հնդկաստան
16. Պատալայի Հնդկաստան
17. Հիդասպեսի Հնդկաստան, բոլորը պահպանել են իրենց նախկին սատրապներին
18. Կապադովկիա – Նիկանոր
19. Մեծ Փռյուգիա, Պամփիլիա, Լիկաոնիա, Լիկիա - Անտիգոնոս
20. Կարիա – Կասսանդրոս
21. Լիդիա – Կլեիտոս
22. Հելլեսպոնտական Փռյուգիա, Արրիդայոս[1]:

Ակնհայտ է, որ Հայաստանը բացակայում է այս ցուցակում: Դրա միակ պատճառն այն է, որ Հայաստանը չէր գտնվում մակեդոնական ենթակայության ներքո:

---

[1] Diodori, liber XVIII, cap. 39; Arriani Historiae successorum Alexandri fragmenta, 34. Ընդգծված համարները վերաբերում են նախկին սատրապներին:

Անտիպատրոսը ավել է իր համաձայնությունն իբրև խնամակալ: Նա վախճանվել է երկու տարի անց: Անտիգոնոսի և Եվմենեսի միջև ծայր է առել կատաղի պայքար: Վերջինս պարտվել է և ապաստանել Նորայում՝ Լիկաոնիայի և Կապադովկիայի սահմանամերձ տարածաշրջանում գտնվող բերդամրոցում[1]:

Մեզ հայտնի է, որ «Եվմենեսը մտադիր էր փախչել Հայաստան, որպեսզի այնտեղ բնակիչներից որոշ դաշնակիցներ ձեռք բերեր»[2]: Սակայն, Անտիգոնոսը նրան խանգարել է, և այդ ժամանակ նա ճողոպրել է Նորա [բերդամրոց]:

Եվմենեսը ձգտում էր աջակցություն գտնել Պարսկաստանում և իր հակառակորդների դեմ մարտնչել տեղի սատրապ Պևկեստասի զինված ուժերի միջոցով: Վերջինս մրցակցում էր Մարաստանի սատրապ Պիթոնի հետ՝ Պարսկաստանում գերիշխանության հասնելու համար: Բաբելոնի սատրապ Սելևկոսը Պիթոնի կողմն է անցել: Քիչ անց հայտնվել է Անտիգոնոսը և Բաբելոնից հարձակվել Եվմենեսի վրա: Տաղարնարգայում (Սպահանի մոտակայքում) Եվմենեսը տանուլ է տվել ճակատամարտը և սպանվել Անտիգոնոսի կողմից 317 թ.[3]:

Այդ պահին Հայաստանի սատրապությունն Օրոնտեսի ձեռքին էր: Պատմում են, որ Եվմենեսը հորինել էր «ասորերեն գրված մի նամակ», որտեղ ասված էր, որ մանուկ ժառանգորդ Ալեքսանդրը և [Ալեքսանդր Մեծի մայր] Ողոմպիադն արտահայտվել էին Եվմենեսի օգտին և Անտիգոնոսի դեմ: Եվմենեսն այս կեղծ նամակը ներկայացրել է իբրև «Հայաստանի սատրապ և Պևկեստասի բարեկամ Օրոնտեսից ստացված»[4]:

Մենք վստահ չենք, թե արդյո՞ք Եվմենեսն Օրոնտեսի Հայաստանում էր հետամուտ այն օգնությանը, ինչի մասին նշեցինք վերը, թե խոսքը գուցե և վերաբերում էր Փոքր Հայքին:

Եվմենեսի սպանությունից հետո Անտիգոնոսը 317-301 թթ. ընկած ժամանակաշրջանում դարձել է պետությունը տնօրինող առաջին դեմքը: Նա, որին հաջորդել է իր որդի Դեմետրիոս Պոլիորկետեսը, երազում էր վե-

---

[1] Plutarchi, Eumenes. 10.

[2] Diodori, liber XVIII, cap. 41. ὁ μὲν Εὐμενὴς ἐπεβάλετο φεύγειν εἰς τὴν Ἀρμενίαν, καὶ τῶν ἐν ταύτῃ κατοικούντων τινὰς πρὸς τὴν συμμαχίαν συλλαβέσθαι.

[3] Diodori, liber XIX, cap. 14.

[4] Diodori, liber XIX, cap. 23: Ἡ δὲ ἐπιστολὴ Συρίοις γεγραμμένη γράμμασιν ἀπέσταλτο παρ' Ὀρόντου τοῦ σατραπείαν μὲν ἔχοντος Ἀρμενίας, φίλου δὲ ὄντος Πευκέστῃ. Plutarchi, Eumenes. 13. Պլուտարքոսին այս նամակը հայտնի է, սակայն, նա այն համարում է արժանահավատ և չի հիշատակում հայ սատրապ Օրոնտեսին:

բակազգնել կայսրության միասնությունը: Սելևկոսը զգալով վերահաս սպառնալիքը, ճահանջել է Պտղոմեոսի մոտ, որը նմանապես սոսկում էր Անտիգոնոսի իշխանատենչությունից: Նրանք հարաբերություններ են հաստատել Մակեդոնիայի և Թրակիայի տիրակալների հետ և համատեղ առաջարկությամբ դիմել Անտիգոնոսին՝ Բաբելոնը՝ Սելևկոսին, Կապադովկիան՝ Կասսանդրոսին և Սիրիան՝ Պտղոմեոսին զիջելու հարցով: Անտիգոնոսը գերադասել է հարցը լուծել ուժի միջոցով և նրանց պատերազմ է հայտարարել, որին առնչվող երկու հանգամանք արժանի են հիշատակության: [Առաջինն է] Գազայի ճակատամարտն Ասորիքում, որի արդյունքում՝ 312 թ. Սելևկոսը գրավել է Բաբելոնը:

Անտիգոնոսը և Դեմետրիոսը 306 թ. շահել են ծովային մեծ ճակատամարտը և այդ առիթով ընդունել թագավորական տիտղոս: Մյուս ժառանգորդները չեն հապաղել վարվել նույն ձևով: Այդ պահից կայսրության բաժանումն ինքնուրույն միավորումների՝ իրականացված փաստ էր: Կապադովկիայում գտնվող Իպսոսում՝ Անտիգոնոսի և նրա հակառակորդների միջև տեղի ունեցած մեծ ճակատամարտն Անտիգոնոսի համար աղետալի հետևանքներ է ունեցել: Պարտություն կրելով՝ նա 301 թ. ինքնասպան է եղել: Փոքր Ասիան անցել է Լյուսիմաքոսին՝ Թրակիայի տիրակալին, իսկ Ասորիքը՝ Սելևկոսին:

Անտիգոնոսի որդին՝ Դեմետրիոսը, հաջորդ քսան տարվա ընթացքում շարունակելու է պայքարը Փոքր Ասիայի համար: Նախ Սելևկոսը զորավիգ է եղել Լյուսիմաքոսին՝ Դեմետրիոսի դեմ պայքարում, որն ի վերջո պարտություն է կրել 285 թ. և մահկանացուն կնքել՝ իբրև Սելևկոսի գերի: Այնուհետև, 281 թ. Կուրուպեդիոնի ճակատամարտում նա հարցերը լուծել է Լյուսիմաքոսի հետ: Սելևկոս [I Նիկատորը]՝ իբրև Ասիայի միակ տիրակալ, հաղթանակել է: Սելևկյանների կայսրությունը հիմնադրված էր: Այն ընդգրկում էր Փոյուգիայից մինչև Հնդկաստան ձգվող երկրները՝ «Միջագետքը, Հայաստանը, Սելևկյան Կապադովկիան, Պարսկաստանը»[1], Պարթևստանը և այլն: Պատմիչն ընդգրկելով Հայաստանը Սելևկյանների երկրների թվում՝ սխալվել է:

---

[1] **Appiani, De rebus Syriacis**, 55. ἦρξε Μεσοποταμίας καὶ Ἀρμενίας καὶ Καππαδοκίας τῆς Σελευκίδος λεγομένης καὶ Περσῶν, և այլն: Նույն պատմիչը մեկ այլ տեղ հղում է Հիերոնիմոսին՝ ըստ որի, Ալեքսանդրը երբեք չի մոտեցել Կապադովկիային, այլ «Դարեհի դեմ է գնացել այլ ճանապարհով, որը ձգվում էր Պամփիլիայի և Կիլիկիայի ծովափով», ἀνὰ τὴν παράλιον τῆς Παμφυλίας καὶ Κιλικίας ἑτέραν ὁδὸν ἐπὶ τὸν Δαρεῖον τραπέσθαι (Mithridatica, 8):

322 թ. Պերդիկկասի կողմից խաչված Արիարաթես թագավորի որդի Արիարաթես II-ը ապաստանել էր Հայաստանում: Քիչ անց, երբ Եվմենեսը և Պերդիկկասն արդեն մահացել էին, իսկ Անտիգոնոսը մարտնչում էր Սելևկոսի դեմ, Արիարաթեսն օգտագործելով հայոց թագավոր *Արդոատեսի* տրամադրած օժանդակ ուժերը, սպանել է մակեդոնական զորավարին և վերականգնել իր իրավունքները հայրական իշխանության նկատմամբ[1]: Անտիգոնոսի և Սելևկոսի միջև թշնամանքը սկիզբ է առել Գազայի 312 թ. ճակատամարտից հետո և ավարտին հասել 301 թ. Անտիգոնոսի ջախջախմամբ և ինքնասպանությամբ: Այսպիսով, 312-301 թթ. ընկած ժամանակաշրջանում Հայաստանում իշխել է Արդոատես անունով մի թագավոր: Դա թաքցածանոթ Արուանդես (Arouandes) կամ Արյուանդես (Aruandes), այլ կերպ՝ Օրոնտես անվան աղավաղումն է, նույն սատրապի, որը գլխավորում էր հայկական զինված ուժերն Արբելայի ճակատամարտում 331 թ., նույն սատրապ Օրոնտեսի, որը հիշատակվում է Եվմենեսի († 317) կեղծ նամակի պատմության առնչությամբ:

Կամ նա, կամ էլ հավանաբար նրա որդին, պետք է, որ ընդունած լինեին թագավորական տիտղոսը 306 թ., երբ Անտիգոնոսն իրեն հռչակել է թագավոր, իսկ այլք հետևել են նրա օրինակին: Հայաստանն ի սկզբանե կարողացել է խուսափել մակեդոնացիների տիրապետությունից և երբ վրա է հասել պահը՝ Անտիգոնոսի և այլ ժառանգորդների օրինակով [նրա տիրակալը] ընդունել է թագավորական խույրը:

---

[1] **Diodori**, liber XXXI, cap. 19 (ըստ՝ Փոտ [պատրիարք]ի)․ ʼΑριαράθης δὲ ὁ τοῦ προβεβασιλευκότος υἱὸς ἀπελπίσας κατὰ τὸ παρὸν *ἀποχωρεῖ* μετʼ ὀλίγων π ρὸς *τὴν ʼΑρμενίαν.* Μετʼ οὐ πολὺν δὲ χρόνον τῶν περὶ τὸν Εὐμένη καὶ Περδίκκαν τελευτησάντων, ʼΑντιγόνου δὲ καὶ Σελεύκου περισπωμένων, λαβὼν δύναμιν παρὰ τοῦ βασιλέως τῶν ʼΑρμενίων ʼΑρδοάτου, τὸν μὲν τῶν Μακεδόνων στρατηγὸν ʼΑμύνταν ἀπέκτεινεν, ἐξέβαλε δὲ καὶ Μακεδόνας ταχέως τῆς χώρας,. καὶ τὴν οἰκείαν ἀρχὴν ἀνεκτήσατο [Արիարաթեսը, նախորդ արքայի որդին, հուսահատվելով տիրող իրավիճակից, <զինակիցների> մի փոքր <խմբի> հետ հեռացավ Հայաստան: Եվմենեսի և Պերդիկկասի մահվանից, ինչպես նաև Անտիգոնոսի և Սելևկոսի ընդհարվելուց շատ ժամանակ չանցած, նա, վերցնելով Հայաստանի արքա Արդոատեսից ռազմական ուժեր, սպանեց մակեդոնացիների զորահրամանատար Ամյունտասին, կարճ ժամանակամիջոցում վտարեց մակեդոնացիներին երկրից և վերահաստատեց իրեն պատկանող իշխանությունը]: Վաղուց ի վեր ենթադրել են, որ Արդոատես (Ardoates) անունը պետք է դարձնել Արոանդես (Aroandes) (**J. G. Droysen**, Geschichte d. Hellenismus, II 2, 225): Այն բանից հետո, երբ Նեմրութ լեռան արձանագրությունը բացահայտել է Արոանդեսի և Օրոնտեսի նույնությունը, այդ ենթադրությունը որևէ տարակույս չի հարուցում (5):

Ընդհանուր առմամբ, Սելևկյան կայսրության հյուսիսային սահմանների երկայնքով ձգվող երկրները Բյութանիան, Պոնտոսը, Կապադովկիան, Հայաստանը, Պարթևստանը և նույնիսկ Հնդկաստանի ժողովուրդները կարողացել են խուսափել ժառանգորդների տիրապետությունից և իրենց [իշխանավորներին] են վերագրել թագավորի տիտղոս:

Արոանդես (Արդոատես) թագավորն ունեցել է մի հաջորդ, որի անունը չի պահպանվել (6): Բյութանիայի թագավոր Նիկոմեդես [I]-ը (275-250) իր առաջին կնոջից ունեցել է մի որդի՝ Զեիլաս անունով: Նրա երկրորդ կինը՝ իբրև խորթ մայր, Զեիլասին այն աստիճանի է հալածել, որ դժբախտ արքայազնը հարկադրված է եղել փրկվել՝ ապաստանելով Հայաստանի թագավորի մոտ[1]: Խորթ մայրը ջանացել է ոչնչացնել Զեիլասին՝ գահն իր որդիների համար ապահովելու նպատակով: Զեիլասի փախուստը տեղի է ունեցել նրա հոր կենդանության օրոք, այսպիսով, նախքան 250 թ., հավանաբար, 265 թ. շրջանում: Այս տարեթվին Հայաստանում եղել է մի թագավոր, որը Զեիլասին ապաստան է հատկացրել: Նա, ամենայն հավանականությամբ, Արոանդեսի որդին է, ամեն դեպքում՝ նրա հաջորդը:

Սելևկոս II-ի (246-226) օրոք գոյություն է ունեցել արդեն մեկ այլ հայոց թագավոր՝ Արսամեսը [Արշամ]: Սելևկյան այս թագավորի եղբայր Անտիոքոս Հիերաքսն ապստամբել է թագավորի դեմ և փախել դեպի Միջագետք և, հատելով Հայաստանի սահմանը՝ ընդունվել է Արսամեսի կողմից, որը նրա բարեկամն էր[2]: Փախստական արքայազնը վախճանվել է 227 թվականին: Արսամեսը, որն այդ ժամանակ զբաղեցնում էր Հայաստանի գահը, հավանաբար, սերում է նշված թագավորից՝ Զեիլասի բարեկամից և ժամանակակցից: Որ այս երկու թագավորներն իրոք պատկանում էին Օրոնտեսի և Արոանդեսի հարստությանը, ապա մենք դրա ապացույցն ունենք Կոմմագենեի թագավորի արձանագրության մեջ, որի մասին խոսք եղավ վերը:

---

[1] **Memnonis**, Historia Heracleiae Ponti, fr. 22; (C. **Müller**, Fragmenta historicorum graecorum, Paris, 1883, t. III, p. 537. Οὐ πολλοῦ δὲ πάνυ ῥυέντος χρόνου ὁ τῶν Βιθύνων βασιλεύς Νικομήδης ἐπεὶ ὁ μὲν ἐκ προτέρων αὐτῷ γάμων γεγονὼς παῖς Ζηΐλας φυγὰς ἦν πρὸς τὸν 'Αρμενίων βασιλέα ταῖς τῆς μητρυιᾶς 'Εταζέτας μηχαναῖς ἐλαθείς... [Շատ ժամանակ չանցած Բյութանիայի թագավոր Նիկոմեդեսը, քանի որ նրա առաջին ամուսնությունից ծնված երեխան՝ Զեիլասը, իր խորթ մոր դավերից թաքնվելու համար փախել էր հայերի թագավորի մոտ...]:

[2] Polyaeni Rhetori IV, 17. 'Αντιόχος Σελεύκου τοῦ ἀδελφοῦ ἀποστὰς εἰς τὴν Μέσην τῶν ποταμῶν, ὅθεν καὶ μὲν 'Αρμενίων ὅρους διελθόντα φίλος ὢν 'Αρσάμης ὑπεδέξατο.

Կոմմագենեի թագավոր Անտիոքոսը իրեն համարում էր ծագումով Արոանդեսի [Երվանդի] ընտանիքից: Նրա տված ծագումնաբանությունն ընդգրկում է.

թագավոր Արսամես, որը Սամոս թագավորի որդին է և
թագավոր Միհրդատ՝ Սամոս թագավորի որդին[1]:

Այս Արսամեսը մեր [Արշամ]-Արսամեսն է, Սելևկյան փախստական արքայազնի բարեկամը: Անտիոքոս Հիերաքսն Արսամեսի մոտ է փախել 230 թ. շրջանում:

Անտիոքոսը Սելևկոս II Կալլինիկոսի եղբայրն էր: Վերջինս սպանել էր իր խորթ մորը՝ Բերենիկեին, Եգիպտոսի թագավոր Պտղոմեոս [III Եվերգետես I]-ի [246-221] քրոջը: Այս հանցանքը Պտղոմեոսին տրամադրել է նրա դեմ: Պարտված Սելևկոսը փախել է Անտիոքոսի մոտ և օգնություն հայցել իր եղբորից: Իբրև փոխհատուցում՝ նա նրան առաջարկում էր Ասիայի՝ իրեն պատկանող ամբողջ մասը՝ մինչև Տավրոս լեռը:

Իշխանատենչությամբ համակված, ուրիշի ունեցվածքի հանդեպ ընչաքաղցությամբ լի Անտիոքոսը ինչպես գիշատիչ թռչունը, ցանկանում էր իր եղբորը զրկել ամեն ինչից, որից և ծագել է նրա Հիերաքս՝ «ճուտակ» մականունը:

241 թ. Պտղոմեոս թագավորը տասը տարով հաշտություն է կնքել Սելևկոսի հետ: Եղբայրների միջև բռնկվել է պատերազմ: Հիերաքսը երեք մեծ պարտություններ է կրել, կորցրել իր ամբողջ թագավորությունը և ճողոպրել դեպի Միջագետք: Ապա նա ապաստանել է Կապադովկիայի թագավոր Արիարաթեսի (280-230) մոտ, որը նրան նախ լավ ընդունելության է արժանացրել, սակայն, քիչ անց Անտիոքոսը նկատել է, որ իր դեմ դավեր են լարվում և փախել է: Այդ ժամանակ է, որ նա պատսպարվել է *Արսամեսի* մոտ: Սակայն, Սելևկոսի զորավարները նրան վտարել են Արսամեսի մոտից, և Հիերաքսը փախել է Եգիպտոս: Պտղոմեոս թագավորը նրան արգելափակել է, նա փախել է՝ Թրակիա գնալու համար, ուր և սպանվել է 227 թվականին[2]:

Անտիոքոս Հիերաքսն ամուսնացել էր Բյութանիայի թագավոր Զեիլասի քրոջ հետ, որը զավթել էր իր եղբոր՝ Զիպոետեսի (250-229) գահը: Մենք

[1] **K. Humann und O. Puchstein**, Reisen in Kleinasien und Nord-Syrien, p. 285,

a) βασιλέα <'Α>ρσά<μην> τὸν ἐκ β<ασιλέως> Σάμου,

b) βασιλέα Μιθράτην Καλλίνικον τ<ὸν ἐκ βασιλέ>ω[ς] Σάμο<υ>.

[2] **Polyaeni IV**, 17; **Justini**, liber XIII, cap. 27.

տեսանք, որ անձամբ Զեհլասը 260 թ. սահմանում ապստամբ էր որոնում Հայաստանի մեկ այլ թագավորի մոտ, որի անունը հիշատակված չէ և որը թվում է, թե Արսամեսի հայրն է: Նրա հայրը եղել է Սամոսը, որը կարող էր, հավանաբար, լինել անանուն թագավորը, Զեհլասի բարեկամը և ծագել Արոանդեսից՝ ըստ խնդրո առարկա ծագումնաբանության տրամաբանության:

Ինչ վերաբերում է Միհրդատի հայր Սամոսին, ապա նա կարող էր նույնացվել միևնույն Սամոսի հետ, իսկ այս պարագային Միհրդատը և Արսամեսը կարող են, հավանաբար, լինել երկու եղբայր, կամ հարկ է ընդունել, որ Արսամեսն ունեցել է մեկ այլ որդի, որը կրել է իր հոր՝ Սամոսի անունը:

Արձանագրության համաձայն՝ Արոանդեսն ունեցել է մեկ որդի, որի անունն ավարտվում էր «դանես»-ով: Այսպիսով, Սամոսը չէր կարող լինել Արոանդեսի որդին, սակայն, կարող էր լինել այս X-«դանեսի» որդին: Այսպիսով, մենք կունենանք՝ Արոանդեսին (331-330), X-«դանեսին» (280), Սամոսին (260), Արսամեսին (230):

Անտարակույս, այս Արսամեսն է Խարբերդի տարածաշրջանում, Եփրատի ափին, Արսամոսատա [Արշամաշատ] հայկական քաղաքի հիմնադիրը:

Տեղավայրի նախկին անվանումը, որտեղ հայտնաբերվել են արձանագրությունները, ինչպես հավաստում է հենց արձանագրությունը, *Արսամեա* էր, այն է՝ նոն Արսամեսի հիմնադրած քաղաք: Սամոսատը՝ Կոմմագենեի [մայրա]քաղաքը, կրում է նոն Սամոսի անունը: Ոչինչ հնարավոր չէ ասել Սամոս և Արսամես անուններով հիշատակված այս անձանց հնարավոր նույնության մասին: Հնարավոր չէ նաև սահմանել Օրոնտեսների ճյուղի Կոմմագենե տեղափոխվելու տարեթիվը: Ստույգ է միայն, որ այն տեղափոխվել է Հայաստանից: Բացի Արսամոսատա քաղաքից՝ որն անվանափոխվել է Արշամաշատ, Հայաստանում հայտնի էր Արշամունիք անունով մի տարածաշրջան, ինչը նշանակում է Արշամի, Արսամեսի տիրույթ: Տարածաշրջանը գտնվում է Արածանիից այն կողմ՝ Տարոնի, Տարոնիտիսի սահմաններում:

Այս երկու անունները հստակորեն վկայում են Հայաստանում Արսամես իշխանի [իմա՝ արքայի] գոյության մասին: Միևնույն եղանակով Օրոնտեսների մասին հուշը պահպանվել է նաև մեկ այլ տարածաշրջանի անվան մեջ, որն է՝ Երվանդունիքը, այն է՝ Երվանդունիների տիրույթ: Ի դեպ, Զարեհավան քաղաքը կրում է Զարիադրեսի անունը, որը չի կարող ամենևին վերագրվել Ծոփքի թագավորին: Եթե այս անունը պայմանավորված է մեզ

անհայտ մի իշխանի անվամբ, ապա նույնպիսին կարող էր լինել Երվանդունիքի պարագան:

Արտաշեսի ընտանիքը կարող էր, այսպիսով, վերածվել ազգային հարստության, որը կառավարել է Հայաստանը նվազագույնը Ք. ա. IV դ. վերջերից մինչև II դ. սկիզբը (190 թ.): Հարկ է խորհել, թե արդյո՞ք հարստությունը (7) մարել է այս տարեթվին՝ թատերաբեմը զիջելու համար Արտաքսիասին [Արտաշես] և Զարիադրեսին [Զարեհ]:

## [2. Արտաշես I-ը և հայկական հողերի միավորումը]

Պատմում են, որ Անտիոքոս [III] Մեծի (223-187) երկու զորահրամանատարները՝ Արտաքսիասն ու Զարիադրեսը Հայաստանը բաժանել են միմյանց միջև և յուրաքանչյուրն Անտիոքոսի համաձայնությամբ կառավարել է երկրի մի մասը: Ք. ա. 190 թ. Մագնեսիայի ճակատամարտում Սելևկյանների պարտությունից հետո, նրանք անցել են հռոմեացիների կողմը և իրենց հռչակել միանգամայն անկախ, դառնալով թագավորներ՝ ամեն մեկն իր մասում:

Արտաքսիասին և Զարիադրեսին վերաբերող այս վարկածը մեզ առաջարկել է Ստրաբոնը՝ հիշատակելուց հետո, որ Հայաստանը ենթարկվել է նախ պարսիկներին, ապա՝ մակեդոնացիներին, և այստեղ վերջին սատրապն է եղել Օրոնտեսը՝ Հյուդարնեսի ժառանգորդներից մեկը (8):

Ժամանակակիցները հաճույքով որդեգրել են նշանավոր աշխարհագրագետի պատմությունը, ըստ որում վերջին սատրապ Օրոնտեսին նրանք ընդունել են իբրև Արտաքսիասի և Զարիադրեսի անմիջական նախորդի: Այսպիսով, կարծել են, թե սատրապական վարչակարգը հարատևել է նաև Սելևկյանների տիրապետության օրոք, մինչև Մագնեսիայի ճակատամարտը, որին հաջորդել է Հայաստանի անջատումը Սելևկյան կայսրությունից:

Ի դեմս վերջին սատրապի, այդուհանդերձ, պետք է նկատի ունենալ այն Օրոնտեսին, որն Արբելայի ճակատամարտում հայկական զինական ուժերի հրամանատարն էր: Հետագայում նա կամ նրա որդին ընդունել են թագավորական տիտղոս: Նրա հաջորդները կրել են միևնույն տիտղոսը մինչև Անտիոքոս [III] Մեծի ժամանակները: Եթե մի հույն պատմիչի[1] քմահաճությամբ Հայաստանն ընդգրկվել է Սելևկյանների ենթակայության ներքո գտնվող երկրների թվում, ապա դրան որևէ նշանակություն տալով՝

[1] Appiani, Syriaca, 55.

կարող էին սխալվել: Կարծել են, թե Հայաստանը ենթարկվել է Սելևկոսին, որովհետև Ալեքսանդրի ժառանգության բաժանման ժամանակ այն, հավանաբար, բաժին է հասել Սելևկոսին: Բայց մենք գիտենք, որ ժառանգորդները հավակնում էին իրենց տիրապետության ներքո ունենալ ոչ միայն արդեն նվաճված երկրները, այլև այն երկրները, որոնք հարկ էր դեռևս նվաճել: Նրանք բաժանում էին, այսպես ասած՝ արջի մորթին, նախքան դրան տիրանալը:

Իրականում ո՛չ Սելևկոսը և ո՛չ նրա հաջորդներից որևէ մեկը ոտք չի դրել Հայաստան: Ոչինչ թույլ չի տալիս պնդել հակառակը: Ոչ մի պատմիչ չի հաղորդում այն մասին, որ Սելևկյանները կարողացել են երբևիցե մուտք գործել Հայաստան: Միակ տեղեկությունը, որը մենք ունենք Հայաստանի թագավոր Քսերքսեսի դեմ Անտիոքոս [III] Մեծի կարծեցյալ արշավանքի մասին, բնավ չի ապացուցում, որ Հայաստանը ենթարկվում էր Սելևկյաններին. բացի դրանից, այն վերաբերում է ոչ թե Անտիոքոս [III] Մեծին այլ, ինչպես կտեսնենք ստորև, Անտիոքոս IV Եպիփանեսին (175-164):

Ճիշտ չէ նաև Արտաշեսին և Զարեհին վերագրել Հայաստանի բաժանումը, երբ մենք գիտենք, որ այդ բաժանումը գոյություն ուներ այն ժամանակներից ի վեր, երբ Հայաստանը բաղկացած էր երկու սատրապություններից:

Մեզ թվում է, որ Անտիոքոսի հիշյալ երկու զորավարները հայկական երկու սատրապությունների օրինական ժառանգորդներն էին, որոնք 331 թ. գտնվում էին Օրոնտեսի և Միհրդատի տիրապետության ներքո, իսկ 401 թ.՝ Օրոնտեսի և Տիրիբազոսի: Եթե մենք նույնիսկ ընդունենք, որ Օրոնտեսները թագավորական տիտղոս ընդունելուց հետո իրենց տիրապետության տակ միավորած լինեին ամբողջ Հայաստանը, ապա, այնուամենայնիվ, հնարավոր է, որ վերացած հարստությունը կարողանար վերամրազրել իր իրավունքներն Արտաքսիասի և Զարիադրեսի օրոք: Այդ դեպքում, բաժանումը, որի մասին հիշատակում է Ստրաբոնը, հնարավոր կլինի ընկալել այն առումով, որ միացված մասն անջատված է եղել և վերականգնվել է իր նախկին վիճակով:

Արտաքսիասը և Զարիադրեսը Հայաստանում նախապես իշխած հարստության երկու ներկայացուցիչներն են: Նրանք կոչվում են Անտիոքոսի ստրատեգոսներ ոչ թե այն պատճառով, որ նրա սատրապներն էին, այլ՝ որ իրենց զորքերով մասնակցել են հռոմեացիների դեմ պատերազմին: Նրանք դասվում էին Անտիոքոսի զորավարների, նրա դաշնակիցների, և ոչ թե հպատակների շարքը (9):

III դարում Սելևկյանների քաղաքական շահերը կենտրոնանում են Փոքր Ասիայում, որտեղ նրանք հարկն ունեին ի չիք դարձնել Եգիպտոսի Լագյան [Պտղոմեոսյան] ինքնակալների իշխանատենչ հավակնությունները: Հայաստանը գտնվում էր մրցակցության թատերաբեմից դուրս և կարող էր իր զինված ուժերի առաջընթացն ապահովել խաղաղ պայմաններում և իր սեփական հարստությունների տիրապետության ներքո: Եթե Կապադովկիան, Պոնտոսը, Բյութանիան, գտնվելով այդչափ անբարենպաստ պայմաններում, պահպանել են իրենց թագավորական հարստությունները, ինչո՞ւ Հայաստանը չէր կարող վարվել նույն կերպ, առավել ևս, որ ոչ մի կողմից որևէ սպառնալիք չկար (10):

Մենք ունենք հավաստի մի վկայություն, ըստ որի Կապադովկիան, Պափլագոնիան, Պոնտոսը, Բյութանիան, Մեծ և Փոքր Հայքերը երբեք չեն ընդունել ո՛չ Ալեքսանդրի, ո՛չ նրա հաջորդների և ո՛չ նրանից սերողներից որևէ մեկի օրենսդրությունը: Այս երկրներն օտարի լուծ չեն կրել[1], երբեք չեն ենթարկվել որևէ այլ թագավորի, բացի իրենց երկրների թագավորներից: Այսպիսով, սույն վկայությունից ակներև է, որ թվարկված երկրներից և ոչ մեկը չի ընդունել ո՛չ Ալեքսանդրի, ո՛չ նրա հաջորդների և ո՛չ նրանից սերողներից որևէ մեկի օրենսդրությունը: Այս անխռով ժամանակամիջոցում է Հայաստանը նախապատրաստել իր վերելքն Արտաքսիասի և Զարիադրեսի օրոք:

Այս երկու փառապանծ տիրակալներն ավելի են ընդարձակել իրենց երկրների սահմանները: Նրանք տիրացել են հարևաններին պատկանող բազմաթիվ տարածաշրջանների՝

Կասպիանեն [Կասպից երկիր], Փավնիտիսը և Բասորոպեդան գրավվել են մարերից:
Պարիադրեսի լեռնալանջերը, Խորզանենեն, Գոգարենեն՝ իբերներից,
Կարենիտիսը, Դերքսենեն՝ խալիբներից և մոսինոյկոսներից,
Անտիտավրոսում գտնվող Ակիլիսենեն՝ կատաոններից,
Տամոնիտիսը՝ սիրիացիներից:

---

[1] Justini, 38, 7. [Nullam subjectarum sibi gentium expertam peregrina imperia: nullis usquam, nisi domestici regibus paruisse – ջնջված է հեղինակի ձեռքով]; Cappadociam velint, an Paphlagoniam, recensere, rursus Pontum, an Bithyniam, itemque Armeniam majorem minoremque: quarum gentium nullam neque Alexander ille, qui totam pacaverit Asiam, nec quispiam successorum ejus aut posterorum attigisset.

Արտաշեսի թագավորության կենտրոնն Արաքսի հովիտն էր, որտեղ նա հիմնադրել էր իր անունը կրող նոր մայրաքաղաք՝ Արտաշատը: Զարեհի մայրաքաղաքը գտնվում էր Ծոփքում և կոչվում էր Կարկաթիոկերտ [Արկաթիակերտ]:

Նշանավոր աշխարհագրագետն ակնհայտորեն չափազանցել է Արտաշեսի և Զարեհի գործունեության նշանակությունը՝ նրանց անվանը հավելելով այն, ինչը պատկանում էր նրանց վերելքին նախորդած և հաջորդած բազմաթիվ սերունդների:

Ըստ նույն հեղինակի՝ Ակիլիսենեն ռազմակալվել էր հայերի կողմից հնավուրց ժամանակներից ի վեր, քանի որ նա գտնում է, որ այն նվաճվել է Արմենոս [Թեսալացու] ուղեկիցների՝ հայերի հնարավոր նախահայրերի կողմից: Այն, այսպիսով, ներկայանում է իբրև հայերի օրրան: Այդ դեպքում ինչպե՞ս կարելի է առանց հակասության տուրք տալու դրա նվաճումը վերագրել Զարեհին կամ Արտաշեսին:

Տարոնի տարածաշրջանը ևս այս նույն թագավորների օրոք չի նվաճվել: 401 թ. Արդեն Քսենոփոնի ժամանակներում այն պատկանում էր հայերին: 401 թ. Եփրատի վերին հովիտը, որից կազմավորվելու են Կարինի և Դերջանի (Դերքսենե) տարածաշրջանները, մենք տեսնում ենք դեռևս խալիբներով և մոսինոյկոսներով բնակեցված: Դրանց հայացումը (arménisation) կարելի է վերագրել Զարեհի կամ Արտաշեսի ժամանակներին: Սակայն, Կասպիանեի և Փավնիտիսի (Սավնիտիսի) նվաճումը հաջորդում է դրանց և հարկ է վերագրել Տիգրան [II Մեծ]-ին:

Հայկական երկրների ընդարձակումը նոր նվաճումների միջոցով և դրանց հայացումը տեղի են ունեցել աստիճանաբար և երկարատև ժամանակամիջոցում: Արտաշեսը և Զարեհն իրենց նվաճումներով, անտարակույս, դյուրին են դարձրել տարատեսակ էթնիկ տարրերի ձուլումը՝ հետագայում հանգելու համար լեզվական միասնության՝ հօգուտ հայերենի, ինչպես այդ մասին հիշատակում է Ստրաբոնը:

Արտաշեսի և Զարեհի թագավորություններից զատ կար նաև երրորդը՝ Փոքր Հայքի սահմաններում: Դրա սատրապ-թագավորը ոմն Միհրդատն էր՝ Արտաշեսի և Զարեհի ժամանակակիցը:

Միհրդատը, ինչպես նաև Արտանեսը, ընդգրկվել են Պոնտոսի թագավոր Փառնակ [I]-ի (190-169) և նրա հարևանների միջև բռնկված պատերազմում: Նրանք էին՝ Պերգամոնի թագավոր Եվմենես II-ը (197-159), Բյութանիայի թագավոր Պրուսիաս II-ը (182-149) և Կապադովկիայի թագավոր Արիարաթես IV-ը (220-163): Փառնակի ավելի քան իշխանատենչ հավակնությունները այնպիսիք էին, որ հարուցում էին նրա հարևանների տագ-

նապը: Երբ Փառնակն ուղղություն է վերցրել դեպի Սինոպ՝ Բյութանիայի, Պերգամոնի և Կապադովկիայի թագավորները դաշինք են կնքել և հարձակվել նրա վրա[1]: Դաշինքի թիկունքում թաքնվում էր Հռոմը, իսկ Փառնակն ապահովել էր Սելևկյանների թագավոր Սելևկոս IV-ի (187-175) օգնությունը, սակայն հռոմեացիները ձերբակալել են վերջինիս՝ ըստ նրա նախորդի հետ կնքված պայմանագրի: Փառնակն ուներ միայն մեկ դաշնակից, որն էր Փոքր Հայքի թագավոր Միհրդատը: Փառնակն անհաջողության է մատնվել և հարկադրված է եղել հաշտություն կնքել: Նա վերադարձրել է այն, ինչը նվաճել էր, Արիարաթեսին վճարել է փոխհատուցում՝ 90 տաղանդի, իսկ Եվմենես II-ին՝ 300 տաղանդի սահմանում: Միհրդատին ևս պարտադրվել է 300 տաղանդի հասնող ռազմատուգանք՝ որպես պատիժ Փառնակի կողմում ճենգաբար հանդես գալու համար, չնայած Պերգամոնի թագավոր և Փառնակի թշնամի Եվմենեսի հետ նախապես կնքված դաշինքին[2]:

Մենք տեղեկացված ենք, որ 179 թ. պատերազմող կողմերի միջև կնքված պայմանագրում ընդգրկվել են նաև Հայաստանի մեծ մասի թագավոր Արտաշեսը, ինչպես նաև ոմն Ակուսիլոքոս[3]: Ինչպիսի՞ կարգավիճակով էր այնտեղ հանդես եկել Արտաշեսը, արդյո՞ք նա մասնակցել է փոքրասիական գործերին և ո՞ր կողմին է նա հարել՝ ոչինչ հայտնի չէ:

Բնական է թվում, որ Արտաշես թագավորը դաշնակցել է իր անմիջական հարևանների՝ Փոքր Հայքի և Պոնտոսի հետ՝ փոքրասիական պետությունների դեմ, որոնք հռոմեացիների պաշտպանյալներն էին:

Ի վերջո, նրա հարևանների ծավալումը չէր համապատասխանում Արտաշեսի իշխանատենչ ձկտումներին: Առավել ևս նա չէր ցանկանա, որ դաշինք կնքվեր Սելևկյան [թագավորի] հետ, որը շարունակում էր հիշաչարություն տածել իր ազդեցության ոլորտից սպրդած երկրների հանդեպ:

Ավելի ուշ, Անտիոքոս IV Եպիփանեսն (175-164) առճակատման մեջ է մտել Արտաշեսի հետ: Ո՞րն էր դրա շարժառիթը: Նվաճման սովորական կի՞րքը: Միանգամայն հնարավոր է, որ այդ կրքին կարող էր հավելվել

---

[1] Polybii Historiae XXIV, 10; XXV, 2-6; XXVI, 6 (պայմանագիրը); Titus Livius, Ab urbe condita, XX, 2.

[2] Polybii Reliquiae, XXVI, 11. ἐπεγράφη δὲ καὶ Μιθριδάτῃ τῷ τῆς 'Αρμενίας σατράπῃ τριακόσα τάλαντα, διότι παραβὰς τὰς πρὸς Εὐμένη συνθήκας ἐπολέμησεν 'Αριαράθῃ.

[3] Նույն տեղում, 12. Περιελήφθησαν δὲ ταῖς συνθήκαις τῶν μὲν κατὰ τὴν 'Ασίαν δυναστῶν 'Αρταξίας ὁ τῆς πλείστης 'Αρμενίας ἄρχων καὶ 'Ακουσίλοχος.

թշնամանքը մի մարդու հանդեպ, որը կարող էր սատարած լինել Սելևկյանների շահերի դեմ ուղղված ճշված դաշինքը:

Նույն Անտիոքոս IV թագավորն արշավել էր նաև Ծոփքի թագավոր Քսերքսեսի դեմ: Անտիոքոս IV-ն ուներ մի քույր՝ Անտիոքիսը, որն իր կենակիցն էր: Այս անբնական միությունից նա ուներ մի որդի՝ Միհրդատը: Կիլիկիայում երկու քաղաք՝ Տարսոնը և Մալլոսն իբրև սեփականություն տրվել էին Անտիոքիսին: Այս քաղաքներն ապստամբել էին իրենց տիրուհու դեմ: Անտիոքոս IV-ը մեկնել էր ճնշելու խռովությունը[1]: Այս իրադարձությունը նախորդել է դեպի Եգիպտոս նրա արշավանքին, որը ձեռնարկվել է Սելևկյանների թվարկության 143 թվականին, այն է՝ Ք. ա. 170-169 թվականներին[2]:

Անտիոքոսին, հավանաբար, չի հաջողվել վերականգնել իր կենակցի իրավունքները: Քիչ անց մենք նրան տեսնում ենք մեկ այլ գործարքի հետամուտ՝ հանուն նրա և իր ապօրինի որդի Միհրդատի: Նրա մտքով անցել է հարձակվել [Ծոփքի] Քսերքսես թագավորի վրա՝ նրա մայրաքաղաք Արսամոսատայում, քաղաք, որը գտնվում էր Ծոփքում, հայկական տարածաշրջանում: Այն գտնվում էր այսպես կոչված Հրաշալի հովտում՝ Καλὸν πεδίον [Գեղեցիկ դաշտ], Եփրատի և Տիգրիսի միջև: Քսերքսեսը ետ է մղել հարձակումը, սակայն, քիչ անց սոսկալով, որ նա կարող է կրկին նոր հարվածներ ստանալ, հաշտություն կնքելու նպատակով բանագնաց է ուղարկել՝ Անտիոքոսից տեսակցություն հայցելու: Անտիոքոսի մերձավորները կարծում էին, որ պահը բարենպաստ է եղել Քսերքսեսին գերելու համար և նրան խորհուրդ էին տալիս ձեռքից բաց չթողնել զոհին, իսկ նրա թագավորությունը տալ Միհրդատին՝ Կիլիկիայից վտարված նրա քրոջ, այն է՝ Անտիոքիսի ապօրինի որդուն[3]:

---

[1] [«Դէպ եղև տարսացւոց և մաղովտացւոց ժամանակն ի գրգիռ վայրի դիպել վասն զի տուեալ էր զնոսա յուտեստ Անտիոքիդեայ հարճի թագաւորին»]: **Մակաբ.** երկրորդ գիրք, Դ, 30-31:

[2] **Մակաբ.** գիրք I, Ա. 21. հմմտ. **Մակաբ.** գիրք II, Ե. 1-2:

[3] **Polybii Historiae**, VIII, fr. 3 (ed. Teubner, II, p. 360). Ըստ Դիոդորոսի (**Diodori, XXXI**, 19)՝ Արիարաթես IV-ը (220-163) ամուսնացել էր Անտիոքոս [III] Մեծի դստեր Անտիոքիսի հետ: Վերջինս ունեցել է, առանց իր ամուսնու իմացության, երկու որդի՝ Արիարաթեսը և Օլոփերնեսը և քիչ անց τῆς φύσεως ἐπιδεξαμένης [բնության թույլտվությամբ], չնայած որևէ հույսի բացակայության՝ երկու դուստր և մեկ որդի՝ Միհրդատը, որը հաջորդել է իր հորը՝ Արիարաթես անվան ներքո, և որին տրվել է Փիլոպատոր մականունը: Հետաքրքիր է, որ պատմիչը կամ նրա սկզբնաղբյուրը կեղծել են իրականությունը. օրինական որդիները ներկայացվել են իբրև ապօրինի և հակառակ ձևով՝ ապօրինի Միհրդատը՝ իբրև օրինական որդի: Դերերի այս

Ըստ մեկ այլ տեղեկության՝ Անտիոքոսը կարող է նախընտրած լինել բարեկամությունը հայոց թագավոր Քսերքսեսի հետ և նրան կնության է տվել իր կենակցին՝ Անտիոքիսին: Այսպես է նա անօրինել այդ կնոջ ճակատագիրը: Սակայն, հետագայում վերջինս հանցավոր գործիք է դարձել իր եղբոր՝ Անտիոքոս IV-ի ձեռքին՝ երբ նրա դրդմամբ սպանել է իր ամուսնուն՝ [Ծոփքի] ղժբախտ թագավորին[1]:

Այս նենգ սպանությունը պետք է, որ տեղի ունեցած լինի Անտիոքոսի պարթևական արշավանքի ժամանակ: Այս արշավանքի նպատակը կարող էր լինել պարթևական նահանգների ցեղերին տուրքի հանելն ու մեծ գումարներ ձեռք բերելը՝ ի վիճակի լինելու համար մարելու ծախսերն այն պատերազմի, որը հարկ էր մղել հրեաների դեմ: Սել[եկյաննեի] թվարկության 147 թվականին, այն է՝ 166/[16]5 թ. ն[ախքան] Հ[իսուս] Ք[րիստոսը], Անտիոքոսը դուրս է եկել իր մայրաքաղաք Անտիոքից, անցել Եփրատ գետը և շարժվել վերին գավառների կողմերը[2]:

«Անցնելով վերին գավառներով», թվում է, թե Անտիոքոսը, գնացել է Էկբատան՝ կողոպտելու Նանեայի նշանավոր տաճարը[3]: Մարաստանի մայրաքաղաք Էկբատան գնալու համար նա պետք է անցներ Հայաստանով:

Հենց այս պահին է, երբ Անտիոքոս թագավորը կարող էր վճռած լինել ձերբազատվել Քսերքսեսից: Նա նմանապես հարձակվել է Արտաշես թագավորի վրա և ըստ սկզբնաղբյուրներից մեկի՝ նրան գերեվարել է, կամ ըստ մեկ այլ սկզբնաղբյուրի՝ հպատակեցրել[4]:

---

փոփոխությունը բացատրվում է այն բանով, որ Միհրդատը գահը զավթել է Արիարաթեսի օրինական հաջորդներից: Տե՛ս **E. Babelon**, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène, Paris, 1890, p. CXCVI; **J. Markwart**, Untersuchungen zur Geschichte von Eran, Heft I, Göttingen, 1896, S. 504 [20].

[1] **Joannis Antiochensis**, frag. 53 ( **C. Müller**, Fragmenta historicorum graecorum, Paris, 1883, t. IV, p. 557).

[2] **Մակաբ.** առաջին գիրք, Գ. 31-37:

[3] **Մակաբ.** բնագրում տիրում է խառնաշփոթ: Ըստ դրա (**Մակաբ.** առաջին գիրք, Զ. 1-5)՝ Անտիոքոսը մեկնել է Լիմնեոս և ետ մղվելով՝ նահանջել է դեպի Բաբելոն: Այն դեպքում, երբ ըստ նույն բնագրի (**Մակաբ.** երկրորդ գիրք, Թ. 1)՝ խոսքն առնչվում է Պերսեպոլիսին, որտեղից թագավորը, անհաջողությունից հետո, ուղղություն է վերցրել դեպի Էկբատան: Լիմնեոսի, Պերսեպոլիսի փոխարեն նախընտրելի է Էկբատանը:

[4] **Appiani, Syriaca**, 45-46. ἐστράτευσε δὲ καὶ ἐπὶ ᾿Αρταξίαν τὸν ᾿Αρμενίων βασιλέα, καὶ αὐτὸν ἑλὼν ἐτελεύτησεν· ἐνναετὲς παιδίον ἀπολιπών. [արշավեց Հայոց թագավոր Արտաշեսի դեմ, գերեվարեց նրան և վախճանվեց, թողնելով ինը տարեկան զավակի]. **Ibidem**,

Անտիոքոսի պարթևական արշավանքին վերաբերող Աստվածաշնչյան պատմությունն արժանահավատ չէ: Այս արշավանքին այդտեղ վերագրված դրամական շարժառիթն ամենևին լուրջ չէ: Ինչ վերաբերում է այն ճանապարհին, որին հետևել է Անտիոքոսը, ապա դրա հայտանիշները խառնաշփոթ են և հակասական: Դյուրին ձևով կարելի է ընդունել, որ պարթևական արշավանքի պատմական հիմքն Անտիոքոսի ներխուժումն է Հայաստան՝ «Բարձր Հայք»[1]: Նախքան դեպի Իսրայել շարժվելը, սելևկյան թագավորը կարող էր ցանկանալ ապահովագրել իրեն Հայաստանի կողմից: Նա ասպատակել է Ծոփքը և իրականացրել այն, ինչ ծրագրել էր վաղուց ի վեր: Այն է՝ իր ապօրինի որդուն՝ Միհրդատին, հաստատել Քսերքսեսի գահին՝ վերջինիս կնոջ և իր նախկին կենակցի միջոցով նրան սպանելուց հետո: Գահակալությանը կարող էր հակադրվել Արտաշեսը՝ Մեծ Հայքի թագավորը: Դա Արտաշեսի և Անտիոքոսի միջև պատերազմը դարձրել է անխուսափելի:

Այս պատերազմի մանրամասները մեզ համար մնում են անհայտ (11): Պատերազմից հետո Անտիոքոսը եղել է հիվանդ, հավանաբար, վիրավոր և քիչ անց վախճանվել է: Անտարակույս, Նանեա աստվածուհու զայրույթը կամ նրա քրմերի խորամանկությունը որևէ նշանակություն չեն ունեցել թագավորի կործանման հարցում[2]:

Հարկ է նշել, որ հենց Անտիոքոսի հանկարծամահ լինելը կամ Արտաշեսի ընդդիմությունն են խանգարել նրան ձեռք բերելու Ծոփքի գահն իր որդու՝ Միհրդատի համար: Անհաջողությունը փոխհատուցվել է այլ վայ-

---

66: 'Αντιόχου δὲ δώδεκα οὐ πλήρεσιν, ἐν οἷς 'Αρταξίαν τὸν 'Αρμένιον εἷλε, καὶ ἐς Αἴγυπτον ἐστράτευσεν ἐπὶ ἕκτον Πτολεμαῖον. [Անտիոքոսի <թագավորության> ոչ լրիվ տասներկու տարիների ընթացքում նա գերեվարեց հայ Արտաշեսին և արշավեց Եգիպտոս՝ վեցերորդ Պտղոմեոսի դեմ]. C. Müller, Fragmenta historicorum graecorum, Paris, 1883, t. II, p. X, 9. Ըստ Դիոդորոսի (Bibliotheca 31, 17a) ὁ δὲ 'Αντίοχος ἰσχύων κατ' ἐκείνους τοὺς χρόνους ὡς οὐδεὶς τῶν ἄλλων βασιλέων ἐστράτευσεν ἐπ' αὐτὸν καὶ νικήσας ἠνάγκασε ποιεῖν τὸ προσταττόμενον. [իսկ Անտիոքոսն, այն ժամանակ լինելով այնքան ուժեղ, որ այլ թագավորներից չկար նրան հավասար, արշավեց նրա դեմ և հաղթելով՝ պարտադրեց կատարել իր կարգադրածը]:

[1] Հովհաննես Անտիոքացին (Joannes Antiochensis) հաղորդում է, որ Քսերքսեսին սպանելուց հետո Անտիոքոսը τὴν δὲ Περσῶν βασιλείαν αὖθις ανεκτήσατο [իսկույն տիրեց Պարսկական թագավորությանը] (Const. Porphyrogeniti, De insidiis 64, 12), սակայն, համոզված չենք, որ այս բառերը չեն կրում մակաբայեցիների պատմության ազդեցությունը:

[2] Մակաբ. երկրորդ գիրք, Ա. 13-17:

րում: Մենք տեսնում ենք Միհրդատին Կապադովկիայի գահին՝ Արիարաթես V (162-130) անվան ներքո:

Երբ Դեմետրիոս I Սոտերը (162-150)՝ Անտիոքոսի եղբայրը, 162 թ. հափշտակել է գահը, նա պատերազմ է հայտարարել Կապադովկիայի թագավոր Արիարաթես IV-ին (220-163): Դրա պատճառը կամ առիթն այն էր, որ Արիարաթեսը հրաժարվել էր ամուսնանալ նրա քրոջ հետ: Արիարաթեսի՝ անարդարացիորեն գահընկեց արված եղբայր Օլոփերնեսն ապաստանել էր Դեմետրիոսի մոտ և վերջինս, իր հերթին, նրան գրգռում էր իրեն վիրավորած եղբոր դեմ[1]:

Քույրը, որին վերաբերում է խոսքը, միևնույն Անտիոքիսն է: Առաջարկել էին նրան կնության տալ Արիարաթեսին: Արիարաթեսը հրաժարվել է այս ամուսնությունից: Սա կարևոր փաստ է և թեպետ չի կարող հաստատվել նույն առարկային վերաբերող այլ [աղբյուրներից քաղված] տեղեկություններով, այն իր իսկությունից ոչինչ չի կորցնում: Իր մերժման համար Արիարաթեսը թանկ է վճարել: Կապադովկիայի թագավորի դեմ գրգռված Դեմետրիոսը հափշտակել է գահը նրա ժառանգորդ որդուց, այն հանձնելու համար Միհրդատին՝ Արիարաթես V-ին (162-130), Անտիոքիսի որդուն:

Օլոփերնեսը, որը նկատել էր, որ Դեմետրիոսը շատ ավելի հետաքրքրված էր այս զարմիկ Միհրդատի, քան իր ճակատագրի տնօրինմամբ, լքել է նրան և միացել Դեմետրիոսի դեմ այդ ժամանակ ապստամբած Անտիոքի բնակիչներին:

Վարկածը, ըստ որի՝ Արիարաթեսի երկու որդիները ներկայացված են իբրև ապօրինի, իսկ փոխարենը՝ Միհրդատն իբրև օրինական, անկասկած, միտումնավոր է և նպատակաուղղված փրկելու Կապադովկիայի թագավորական հարստության վարկը: Այս աղավաղմանը մեծապես նպաստել են այն արժանիքները, որոնցով Միհրդատը կարողացել է նշանավորել իր անունը[2]:

Դեմետրիոսն առիթն ունեցել էր զինվելու Արտաշեսի դեմ[3], բայց թե ինչ պատճառով, մեզ հայտնի չէ: Այդուհանդերձ, Ծոփքի հարցը դեռևս վճռված չէր: Ինչ-որ մի պահի այն նույնիսկ գժտության պատճառ կդառնա Արտաշեսի և Միհրդատի միջև:

---

[1] **Justini XXXV**: propter fastiditas sororis nuptias infestus.

[2] Տե՛ս Դիոդորոսի գովերգումը. **Diodori XXXI**, cap. 19, 21. Տե՛ս նույնը՝ **Polybii Reliquiae, XXXI, 15a**:

[3] **Diodori, Excerpta; C. Müller, Fragmenta historicorum graecorum, t. II, p. XII, 13.**

Քսերքսեսի վախճանից հետո Ծոփքի գահը բաժին չի հասել Միթրոբուզանեսին, որը, ինչպես մենք կարծում ենք, նրա եղբայրն էր: Արտաշեսը թվում է, թե վտարել է Միթրոբուզանեսին, նրա պետությունը բռնագրավելու նպատակով: Միհրդատը հետաքրքրություն էր դրսևորում Ծոփքի՝ իբրև իր մոր՝ Անտիոքիսի ժառանգության ճակատագրի հարցում: Նա ցերադասել է վերահաստատել փախստական իշխանին՝ Միթրոբուզանեսին նրա գահի վրա: Այդ ժամանակ է, որ իր տիրույթներն ընդարձակելու հարցում անհագուրդ Արտաշեսը բանակցությունների մեջ է ներգրավվել Միհրդատ-Արիարաթեսի հետ և հայցել նրա համաձայնությունը՝ սպանելու նաև «երկու պատանիներից երկրորդին» և բաժանելու Ծոփքը միմյանց միջև:

Արիարաթեսը, որը խորշում էր նման ենգ գործերից, պախարակել է բանագնացներին և Արտաշեսին հղած նամակում կոչ արել նրան ձեռնպահ մնալ նման հանցանքներից: Այս վարքագծով Արիարաթեսի փառքն ավելի է աճել և շնորհիվ նրա պարկեշտության՝ Միթրոբուզանեսին է վերադարձվել, այսպիսով, հայրական իշխանությունը[1]:

Արտաշեսն ազդվել է Միհրդատ-Արիարաթեսի ազնվաբարո հորդորումից, ինչպես մեզ թվում է, հրաժարվել է իր ծրագրից և բացի դրանից, նրա նկատմամբ դրսևորել է ավելի մեծ հարգանք, քան նախկինում:

Τὸν νεανίσκον ἑκάτερον [«մյուս երիտասարդին»] արտահայտությունից հետևում է, որ Միթրոբուզանեսը Քսերքսեսի եղբայրն էր և նրանք եղել են դեռևս երիտասարդ, իսկ նրանց հայրը եղել է Զարիադրեսը [Զարեհը]: Ծոփքը պատկանել է Զարեհին: Նրա հետնորդներից մեկը եղել է Արտանեսը, Տիգրանի՝ արքայից-արքայի ժամանակակիցը: Ծոփքը, որը եղել է իր հարևանների՝ Ասորիքի, Մեծ Հայքի և Կապադովկիայի հավակնությունների առարկան, պահպանվել է, խուսանավելով՝ փոխադարձաբար միմյանց չեզոքացնող երեք ախոյանների միջև:

Հայաստանի տարածքի երեք մասերը՝ Մեծ Հայքը, Ծոփքը և Փոքր Հայքն ունեին քաղաքական իրենց հարստությունները:

Մեծ Հայքը համապատասխանում էր, ըստ էության, Օրոնտեսի Արևելյան Հայաստանին, Ծոփքը՝ Տիրիբազոսի Արևմտյան Հայաստանին (Արտանեսին էին պատկանում Հայաստանի հարավային և արևմտյան մասերը), իսկ Փոքր Հայքն ընդգրկում էր մասամբ 19-րդ սատրապությունը, որովհետև դրա քաղավորները տիրում էին մինչև Տրապիզոն ձգվող հողերին:

---

[1] Diodori XXXI, cap. 22.

Դարեհի [վարչական] բաժանումները հաջորդ դարում փոփոխություններ են կրել: Քսենոփոնին[1] արդեն հայտնի է եղել Կապադովկիայի մեծ սատրապության բաժանումը երեք մասի՝ Հելլեսպոնտական Փռյուգիայի, Մեծ Փռյուգիայի, Կապադովկիայի: Պոնտոսի ժողովուրդները՝ խալիբները, քաղդեացիները, մակրոնները, կոլխերը, մոսինոյկոսները, տիբարենները դարձել էին ինքնուրույն[2]: Նրանք էին, որ ձևավորել են 19-րդ սատրապությունը: 401 թ. Հայաստանն ուներ, հավանաբար, նույնիսկ երկու սատրապ՝ մի սատրապ և մի հյուպարքոս: Սատրապը կառավարում էր Արևելյան Հայաստանը, իսկ հյուպարքոսը՝ Արևմտյան Հայաստանը: Մեզ թվում է, որ այս բաժանումները համապատասխանում էին, ըստ էության, 13-րդ և 18-րդ սատրապություններին, սակայն, որոշ փոփոխություններով: 13-րդ սատրապության մի մասը՝ միավորված 18-րդ սատրապությանը, ձևավորում էր Արևելյան, իսկ նախկին 13-րդ սատրապության մյուս մասը, ներառյալ Փոքր Հայքը՝ ինչպես մինչ այդ, ձևավորում էր Արևմտյան Հայաստանը: Ի դեմս դրանցից մեկի առաջնորդի՝ իբրև սատրապի, մենք տեսնում ենք Օրոնտեսին, իսկ Տիրիբազոսը կոչվում էր Արևմտյան Հայաստանի հյուպարքոս: Այս պարագային, «հյուպարքոս» բառը համապատասխանում էր սատրապին, քանի որ Տիրիբազոսը շատ կարևոր անձնավորություն էր՝ ենթարկվելու համար Օրոնտեսի իշխանությանը:

Ինչ վերաբերում է նրանց հարստություններին, մենք դրանց մասին ունենք որոշ տեղեկություններ: Արտաշեսի և Զարեհի ծագումը հայտնի է: Ավելի դժվարին է ճշգրտել Փոքր Հայքի սատրապ-թագավոր Միհրդատի ինքնությունը: Ցանկություն է առաջանում նրան շփոթելու Միհրդատ-Արիարաթեսի հետ[3] կամ նրան վերագրելու Պոնտոսի Միհրդատի ընտանիքին: Մենք առիթն ունեցանք մատնանշելու Ողիաստեսի որդի Միհրդատին: Երբ Դարեհ թագավորի փեսա Տերիտուշմը ձգտում էր ձերբազատվել իր կնոջից՝ կնության առնելու համար իր հարազատ քրոջը՝ Ռոքսանային, Ողիաստես անունով ոմն իշխան նրան մատնել է Փարիսատիսին՝ նրա խորթ մորը: Այս Ողիաստեսի որդին՝ Միհրդատը, ռազմակալել է Զարիս քաղաքը՝ այնուհետև այն Տերիտուշմի որդուն հանձնելու համար: Մենք այն կարծիքն ենք հայտնել, որ Տերիտուշմը կարող էր պատկանել Տիրիբազոսի հարստությանը: Թվում է՝ Զարիս քաղաքը Փոքր Հայքում հայտնի Զարա քաղաքն է: Ողիաստեսը և Միհրդատը պետք է

---

[1] **Cyropaedia**, VIII, 6,7.

[2] **Anabasis**, VII, 8, 25.

[3] **Polybii Reliquiae**, XXXI, 15a.

առնչվեին Փոքր Հայքին: Արտաքսերքսեսը պատժել է Ողիաստեսին և նրա սատրապությունը հանձնել Միհրդատին: Ինձ թվում է, որ խոսքը շարունակ վերաբերել է Փոքր Հայքի սատրապությանը: Այստեղ, հավանաբար, իմաստ ունի ընդունել, որ Ողիաստես-Միհրդատի ընտանիքը շարունակել է իշխել Փոքր Հայքում, և որ Միհրդատը՝ 179 թ. Փառնակի դաշնակիցը, ծագում էր նույն ընտանիքից (12):

### 3. [Հայաստանը Տիգրան II Մեծի գահակալության ժամանակաշրջանում]

Արտաշեսն իշխել է մոտավորապես մինչև 160 թվականը: 162-[16]1 թվականներին նա պատերազմում էր Դեմետրիոսի (13) դեմ: Պարթևների թագավոր Միհրդատ Մեծը (123-88) փառահեղ ավարտի է հասցրել իր հարևանների դեմ մղված բազմաթիվ պատերազմներ, մի քանի անգամ պարտության է մատնել սկյութներին, ի վերջո *հարձակվել է Հայաստանի թագավոր Օրտոա[դիս]տիսի վրա* (Օրտոասդիտիսի փոխարեն)[1]: Այս առիթով պատմիչը ներկայացնում է հայերի ծագման պատմությունը, կարծելով, որ անարդարացի կլիներ ոչինչ չասելը մի թագավորության մասին, որը պարթևների թագավորությունից հետո, ամենաընդարձակն է Ասիայի բոլոր թագավորությունների շարքում, քանի որ Կապադովկիայից մինչև Կասպից ծովն ընկնող տարածքը հասնում է մեկ միլիոն հարյուր հազար[2] (1.100.000) ոտնաչափ երկարության և յոթ հարյուր հազար ոտնաչափ լայնության: Հայաստանի հիմնադիրն է եղել Յասոնի հայ զորավարներից մեկը:

Այնուհետև կարդում ենք. Հայաստանի դեմ պատերազմից հետո Պարթևստանի թագավոր [դարձած] Միհրդատը գահընկեց է արվել՝ իր դաժանության պատճառով: Գահ է բարձրացել նրա եղբայր Օրոդեսը: Պատմիչն ակամայից շփոթել է միևնույն անունն ունեցող երկու թագավորի՝ Միհրդատ II-ին կամ Մեծին և Միհրդատ III-ին (57)՝ Օրոդես I-ի (57-37) եղբորը[3]:

---

[1] Ac postremum Ortoasdisti Armeniorum regi bellum intulit [և հետագայում պատերազմ սկսեց հայերի արքա Արտավազդի դեմ]. Justini, XXII, 2; Trogi Pompeii Prologus, 42.

[2] 1000 մղոնը հավասար է մեկուկես հազար կիլոմետրի, 1100-ը՝ 1650 կիլոմետրի, 700-ը՝ 1050 կիլոմետրի: Հմմտ. Պոսիդոնիոսն ըստ Ստրաբոնի՝ 720×1440 մղոնը դարձնում է 720×360 մղոն (4000×8000; 4000×2000):

[3] [Trogus prol. 42. utque Phrati. successit rex Mithridates cognomine Magnus qui Armeniis bellum intulil. Inde repetitae origines Armeniorum et situs... Idem, 41. Successores deinde eius Artabanus et Tigranes cognomine deus a quo subacta est Media et Mesopotamia. Հրահատին հաջորդեց Միհրդատ արքան, մականվամբ Մեծ, որը պատերազմ

Այս պատերազմի ընթացքում է, որ Տիգրանը կարող էր իբրև պատանդ հանձնվել պարթևներին[1]: Նա ազատվել է 70 հայկական հովիտների հանձնման գնով[2]:

Այս Տիգրանը Տիգրանի որդին էր[3]: Ինչպիսի՞ն է այս Տիգրանների հարաբերությունն Արտավազդի հետ: Տիգրանի որդի Տիգրանը գահ է բարձրացել 95 թ.: Այս տարեթիվը կարելի է ճշգրտել այն հիշատակման օգնությամբ, ըստ որի՝ 70 թ., երբ Ապպիոս Կլավդիոսը ներկայանում է Տիգրանին, վերջինս թագավորում էր քսաներինգ տարուց ի վեր[4]: Տիգրանի մահվան տարին հայտնի է միայն մոտավորապես. 54 թ., Կրասոսի արշավանքի ժամանակ, Տիգրանի գահը զբաղեցնում էր Արտավազդը, այսպիսով, Տիգրանն արդեն վախճանված էր: Նա ողջ էր 56 թ. փետրվարին՝ Կիկերոնի ճառի ժամանակ[5]: Նա մահկանացուն կնքել է 56-54 թթ. միջև, ասենք՝ 55 թ., վախճանի պահին նա ութսունինը տարեկան էր[6]: Հետևաբար, նրա ծննդյան թվականը կարող է համապատասխանել 140 թվականին: Նրա հայր Տիգրանն այդ ժամանակ նվազագույնը 20-25 տարեկան էր և պետք է ծնված լիներ Արիարաթես [V]-ի ժամանակներում, այսպիսով, նա կարող էր լինել Արտաշեսի որդին: Արտավազդը, որը գահի վրա էր մինչև 95 թվականը, պետք է լինի նույն Տիգրանի ավագ որդին:

Արտաշեսը, թվում է, գահը թողել է իր որդի Տիգրանին, որն ուներ երկու որդի՝ Արտավազդ և Տիգրան: Գահը նախ զբաղեցրել է Արտավազդը, իսկ այնուհետև Տիգրանը: Վերջինս գահ է բարձրացել 95 թ.: Հարկ է ընդունել, որ Արտավազդի վրա հարձակվել է պարթևների թագավորը՝ նրա թա-

---

սկսեց Հայաստանի դեմ: Այստեղից հայերի երկակի ծագումն ու տեղակայությունը: Նրան հաջորդեցին Արտաքանոսն ու Տիգրանը՝ Աստված մականվամբ, որոնք հնազանդեցրին Մարաստանն ու Միջագետքը]: Յո. Մարկվարտն առաջարկում է Արտաքանոսը դարձնել Արտաքազես՝ Արտավազդ: **Beiträge zur Geschichte und Sage von Iran, Zeitschrift der Deutsche Morgenländischen Gesellschaft**, 49, p. 645. Հմմտ. **Orosius VI.** 19. 3. Օրոզիոսը Տիգրանի որդուն անվանում է Արտաքանոս՝ Արտավազդի փոխարեն]:

[1] **Justini**, XXXVIII, 3. **Tigranes obses Parthis ante multum temporis datus, sed olim ab iisdem in regnum paternum remissus.** [Տիգրանը պարթևներին վաղուց էր հանձնվել իբրև պատանդ, բայց հետո նրանց կողմից ազատվել էր՝ հայրենի թագավորությունը <գնալու համար>]:

[2] **Strabonis XI**, 14, 15.

[3] **Appiani Syriaca**. 48.

[4] **Plutarchi Lucullus**, 21.

[5] **Pro Sestio**, 59 (14).

[6] Հայաստանի թագավոր Տիգրանը, նա, ում դեմ Լուկուլլոսը պատերազմել է, 85 տարեկան էր, երբ մահացել է, և դա տեղի է ունեցել հիվանդության հետևանքով (**Macrobii** 15):

գավորության սկզբում, 120 թ. շրջանում, սկյութների դեմ պարթևների թագավորի պատերազմից հետո: Այսպիսով, մենք կստանանք հետևյալ պատկերը՝




Եթե ընդունենք, որ այն պահին, երբ Տիգրան [II]-ը հանձնվել է պատանդ՝ մոտավորապես 17-ից 20 տարեկան էր ([սկզբնաղբյուրներում նշված է, որ] այդ ժամանակ նա երիտասարդ էր), ապա դա կհամընկնի 123-120 թվականներին, այն է՝ պարթևների թագավոր Միհրդատ [II Մեծ]-ի հարձակման տարեթվին:

Տիգրանը պատանդությունից ազատագրվել է իր գահ բարձրանալուց շատ առաջ, տարածքային զիջման դիմաց: Նա մասնակցել է իր եղբայր Արտավազդի կառավարմանը և փորձ ձեռք բերել պետական գործերի ասպարեզում (15): Նրա նվաճումների մի մասը հարկ է, հավանաբար, վերագրել Արտավազդի թագավորության ժամանակաշրջանին:

Տիգրանի տարածքային ձեռքբերումների ժամանակագրությունը հնարավոր չէ ճշգրտել: Առաջին հարվածը, հավանաբար, հասցրել է Ծոփքին: Մենք տեսանք, որ Կապադովկիայի թագավորը հավանության չի արժանացրել Արտաշեսի՝ Ծոփքի բաժանմանն առնչվող ծրագիրը: Իբրև այս «անշահախնդիր» ծառայության փոխհատուցում՝ Կապադովկիան գրավել է Եփրատի վրա գտնվող Տոմիսա ամրոցը, որը հսկում էր Եփրատի կամուրջը և միաժամանակ կարող էր պիտանի լինել իբրև խիստ կարևոր

հանգրվան՝ Փոքր Ասիայից դեպի Միջագետք և ավելի հեռու ձգվող գլխավոր ճանապարհներից մեկի վրա: Ավելի ուշ, Կապադովկիան, իր հերթին ունենալով Ծոփքի օգնության կարիքը, հարկադրված է եղել 100 տաղանդի դիմաց վերադարձնել Sոմիսա ամրոցը[1]:

Հայկական հողերի քաղաքական միավորումը պետք է լիներ թագավորի առաջին հոգսը, որը մտածում էր իր երկրի հզորության մասին: Ծոփքի թագավոր Արտանեսը, հավանաբար, Միթրոբուզանեսի որդին էր: Sիգրանը նրան դուրս է վանել և այս կերպ իրականացրել Հայաստանի [անջատված] մասերի միավորումը:

Երկրորդ հարվածը, որի հետևանքով Հայաստանը ստացել է Կորդուքը, որի թագավոր Զարբիենոսը [պարթևաց] Միհրդատ II-ի դեմ պայքարում [Կապադովկիայի թագավոր] Արիարաթես Փիլոպատորին (16) օգնելու նպատակով *[բնագրում բացակայում է մի հատված],* նախատեսված էր Ատրպատականի համար: Պարթևներն առաջ ընթանալով՝ նվաճել էին Մարաստանն ու Պարսկաստանը և դարձել Հայաստանի սահմանակիցը: Միհրդատ II թագավորը պետք է Sիգրանին վերադարձներ 70 հովիտները, որոնք զավթել էր Արտավազդից՝ իբրև Sիգրանի ազատագրման դիմաց փոխհատուցում: Հաղթված պարթևները Sիգրանի հետ կնքել են դաշնագիր[2]: Նրանք պարտավորվել են հրաժարվել նույնիսկ Ատրպատականից՝ հօգուտ Sիգրանի: Այս ձեռքբերումն ամրապնդվել է Ատրպատականի թագավոր Միհրդատի հետ Sիգրանի դստեր ամուսնությամբ[3]:

Իբերիայի և Աղվանքի թագավորները ճանաչել են Sիգրանի գերիշխանությունը: Հայկական սահմաններն այս կողմից հասել են [Մեծ] Կովկասի լեռնաշղթային:

[Sիգրանը] ճնշում է գործադրել հատկապես հարավային սահմանների վրա: Մայրամուտ ապրող Սելևկյաններն ի վիճակի չէին դիմակայելու նրա

[1] **Strabonis, XII**, 21; XIV, 2, 29.

[2] **Justini, XI**, 1. Tigranem, regem Armeniae instructum et Parthicae societate et Mithridati attinitate. [Sիգրանին, որը կրթված էր և՛ պարթևական ընդհանուր կյանքով և՛ Միհրդատի մերձակայությամբ] (17):

[3] **Cassius Dio**, XXXVI, 16. Ըստ Իսիդոր Խարաքսացու՝ (**Isidori Characeni Mansiones Parthicae, Geographi graeci minores**, I, 250-251) հայերը թափանցել են մինչև Էկբատան և ամբողջությամբ *այրել* սատրապ-արքայի ապարանքը: Հավանաբար, սատրապը եղել է Դարեհը, որի անունը [հիշատակվում է] Պոմպեոսի հաղթահանդեսի [նկարագրությունում] (**Diodori**, XL, 4 ed. Didot., II, 581; **Appiani Mithridatica**, 106): [Ժամանակին] պարթևների Միհրդատ I թագավորը [170-139] հպատակեցրել է Մարաստանը, որտեղ կառավարիչ է նշանակել *Բակասիսին* (**Justini**, XLI, 6): Դարեհը պետք է, որ ծագեր Բակասիսից:

առաջխաղացմանը: Պարթևներն իրենց այնքան ուժեղ չէին զգում, որպեսզի կարողանային նրան խոչընդոտել: Կոմմագենեի, Օսրոենեի և Ադիաբենեի արքայիկները[1] դասվում էին Հայոց թագավորի սատրապների շարքը:

Տիգրանն անցել է Եփրատը և իր կամքը պարտադրել Ասորիքին ու Փյունիկիային 84/87 թվականին: Գահից վռնդված, սակայն, գանձերով ծանրաբեռնված վերջին Սելևկյանները գնացել էին Հռոմ, որպեսզի օգնություն հայցեին: Պաղեստինը և Եգիպտոսը հաշվում էին Տիգրանի ներխուժման օրերը: Հրեաները շտապել են դեսպանություն ուղարկել Տիգրանի մոտ[2]:

Սելևկյան վերջին թագավոր Փիլիպպոս [I]-ը (92-83) պատերազմի ընթացքում, հավանաբար, զոհվել է: Նրա որդին՝ Փիլիպպոս II-ը, ճողոպրել է Կիլիկիա[3], իսկ Անտիոքոսը՝ Հռոմեական Ասիա: Անտիոքը դարձել է Տիգրանի նստավայրերից մեկը: Երկիրը դրվել է Մագաղատեսի (Բագարատ [Բանի նստավայրերից]) կառավարության ներքո[4]: Տիգրանն «անխռով վայելել է [սիրիական] գահը տասնչորս տարի շարունակ՝ չունենալով որևէ մեկի վրա հարձակվելու կամ որևէ մեկի դիմակայելու անհրաժեշտությունը» (84-66 թվականները)[5]:

Արևմուտքում Տիգրանն իրեն է ենթարկել Կապադովկիան և Կիլիկիան: Սոլի քաղաքի բնակչությանը Տիգրանը տարհանել է[6] և տեղափոխվել Հայաստան[7]: Նա բազմիցս ասպատակել է Կապադովկիան, Մաժակի (Maraca) և տասնմեկ այլ քաղաքների բնակիչները, ընդհանուր առմամբ, 300.000 մարդ, տեղափոխվել են նոր մայրաքաղաք[8]:

74 թ. ն[ախքան] Հ[իսուս] Ք[րիստոսը] վախճանվել է Բյութանիայի վերջին թագավոր Նիկոմեդեսը՝ թողնելով մի կտակ, ըստ որի՝ իր թագավորությունը կտակում էր հռոմեական ժողովրդին: Հռոմն, այսպիսով, դառնում էր Պոնտոսի վտանգավոր հարևանը: Այդ իսկ պահից առճակատումը

---

[1] **Strabonis**, XI, 14, 15.

[2] Antiquitatum Judaicarum 16, 4. De bello Judaico, I, 5, 3.

[3] **Justini, XL**, 1.

[4] **Appiani**, Syriaca, 48.

[5] **Justini**, XL, 1. Ապպիանոսը հաշվում է տասնչորս տարի՝ 84-70 թթ. Appiani, 17:

[6] **Plutarchi**, Pompeius, 28.

[7] **Cassius Dio**, XXXVI, 37.

[8] **Appiani** Mithridatica, 67; **Strabo**, XI, 14, 15; XII, 2, 9. Փավստոսը *** (18): Տիգրանի կողմից Կապադովկիայի և Կիլիկիայի ամայացումը Թ. Ռեյնաքը վերագրում է 77 թ., հղելով Ստրաբոնին և Պլուտարքոսին (**Strabo**, XI, 14, 15; **Plutarchi** Lucullus, 21): Տիգրանակերտի հիմնադրումը պետք է նախորդած լինի Ասորիքի նվաճմանը, այն է՝ մինչև 84 թվականը:

Միհրդատ [Եվպատոր]-ի հետ դառնում էր անխուսափելի, այնպես որ Հռոմում մտահոգվում էին նշանակելու մի զորավարի, որն ի վիճակի կլիներ վարել մոտալուտ պատերազմը: Քաջ գիտակցում էին, որ Միհրդատի հետ պայքարը «մեռած չէ, այլ միայն քնած է»: Ամենաաչքի ընկնող մարդն այդ պահին Պոմպեոսն էր, որն այնքան էր գերազանցում մյուս բոլորին, որ կարող էր նշանակվել իբրև Միհրդատի դեմ պատերազմող զորավար, եթե ավարտին հասցներ պատերազմն Իսպանիայում:

176-րդ օլիմպիադայի տարեթվին՝ 73 թ. ն[ախքան] Հ[իսուս] Ք[րիստոսը], [Հռոմի] հյուպատոս Լուկուլլոսը, որը նախանձում էր Պոմպեոսի փառքին, ձգտում էր նշանակվել Միհրդատի դեմ [պատերազմը վարող զորաբանակի հրամանատար]՝ մեծ սխրանքներով նշանավոր դառնալու համար: Այդ ժամանակ Հռոմում դրության տերը [Պուբլիոս] Կետեգոսն էր, ժողովրդական տրիբունը, «որն առանձնահատուկ թշնամանք էր տածում Լուկուլլոսի հանդեպ, ատում էր նրա կենսակերպը, որին բնորոշ էին խայտառակ սիրային արկածները, անամոթությունը և անառակությունը»:

Լուկուլլոսն իր նպատակին հասնելու համար գործի է դրել բոլոր միջոցները: Կիլիկիայի կառավարչի պաշտոնն այդ ժամանակ թափուր էր: Նա ջանացել է ձեռք բերել այդ պաշտոնն այն ակնկալությամբ, որ Ասիայում՝ Կիլիկիայում գտնվելու պարագայում, իր կառավարչապետության հարևանությամբ գտնվող երկրներում պատերազմ վարելը կհանձնարարվի իրեն: Նպատակին հասնելու համար ընտրած նրա ուղին, «ո՛չ ազնիվ էր և ո՛չ արժանի գովեստի»: Լուկուլլոսը դիմել է [Պրետիա անունով] մի ազդեցիկ կուրտիզանուհու, որը եղել է Կետեգոսի հոմանուհին, նրան հրապուրել նվերների և շողոքորթությունների միջոցով, որի միջնորդությամբ նրան հաջողվել է նշանակվել Կիլիկիայի կառավարիչ ու ղեկավարել Միհրդատի դեմ պատերազմը:

Լուկուլլոսն Ասիայում է՝ իբրև բանակի զորավար: «Միհրդատն, ի սկզբանե, հանդես է եկել հանդիսավոր և հպարտ ձևով՝ հռոմեացիների դեմ իր հարձակումների ժամանակ. սակայն, նա իրական ուժ չուներ, դա ընդամենն արտաքին փայլ էր՝ տպավորություն ստեղծելու համար»: Այնուհետև պարտությունները ստիպել են Միհրդատին փոխել վերաբերմունքը: Պատերազմը վերսկսելու համար նա իր բանակը վերակառուցել է հռոմեական մարտակարգով: Զենքերի, ոսկու և թանկարժեք քարերի յուրօրինակ ցուցահանդես ներկայացնող խառնիճաղանջ զանգվածը մի կողմ է թողնվել: Նա ձուլել է տվել սրեր՝ հռոմեական ձևով և պատրաստել է տվել ամուր վահաններ, հավաքել է ավելի լավ վարժեցված, քան զգեստավորված ձիեր: Այսպիսով, նա ոտքի է հանել տասներկու բյուր (120.000) հետևա-

կայինների, որոնք դասակարգված էին ինչպես հռոմեական զումարտակները և գրեթե տասնվեց հազար հեծյալ ու մանգաղակիր հարյուր մարտակառք:

Նրա նավերը ևս՝ ոսկեզօծ դրոշների, կուրտիզանուհիների համար բաղնիքների, հաճույքներ վայելելու համար նախատեսված ու կահավորված զարդասենյակների փոխարեն լցվել են և հագեցվել զենքերով, նիզակներով և ռոճիկ վճարելու համար դրամով:

Այս նախապատրաստություններից հետո Միհրդատը ներխուժել է Բյութանիա: Նրան ամենուր դիմավորել են բարեհաճորեն, քանզի «ամբողջ Ասիան տառապում էր Հռոմի վաշխառուների և կապալառուների կողմից դրսևորվող անհանդուրժելի վերաբերմունքից»:

Միևնույն ժամանակ, ինչ Լուկուլլոսին, նրա գործընկերոջը, մեկ այլ հյուպատոսի՝ Մարկոս Կոտտային հանձնարարվել է ստանձնել նավատորմի հրամանատարությունը՝ պաշտպանելու համար Բյութանիան: Հաղթանակի ծարավի ընչաքաղց Կոտտան՝ չցանկանալով Լուկուլլոսի հետ կիսել դրա բերկրանքը, շտապել է ձեռնամուխ լինել [ռազմական] գործողությունների: Սակայն, պարտվելով միաժամանակ թե՛ ցամաքում և թե՛ ծովում, շրջափակվել է և պաշարվել Քաղկեդոնում ու հայացքը շրջել դեպի Լուկուլլոսը:

Եղել են այնպիսիք, որոնք խորհուրդ են տվել Լուկուլլոսին՝ Կոտտային այդտեղ թողնել և առաջ ընթանալ ու մուտք գործել Միհրդատի թագավորություն, որն անպաշտպան կգտնեին: Սակայն զորավարն ասում էր, որ «ինքը կգերադասի փրկել թեկուզ մեկ հռոմեացու, քան տիրանալ այն ամենին, ինչը պատկանում է թշնամուն»:

Երբ Արքելաոսը, Միհրդատին լքած նրա զորավարը, հավաստիացնում էր Լուկուլլոսին, որ միայն Պոնտոսում հայտնվելը բավական կլիներ, որպեսզի նա դառնար դրա տիրակալը, Լուկուլլոսը պատասխանել է, որ «ինքն ավելի վախկոտ չէ, քան [սովորական] որսորդները և չի շրջանցի գազանին, որպեսզի կովով գնա նրա դատարկ ապաստարանը գրավելու»:

Այս ասելուց հետո, նա ընթանում է Միհրդատին ընդառաջ՝ իր տրամադրության ներքո ունենալով 30.000 հետևակային և 2500 հեծյալ: Խուսափելով մարտից, նա ցանկանում էր ժամանակ շահել: Հարկ է խոստովանել, որ Լուկուլլոսի արշավանքի պատմությունն առասպելական բնույթ ունի: Անտարակույս, սնապարծ զորավարն արել է ամեն ինչ՝ թաքցնելու համար ճշմարտությունը նրանցից, ովքեր նրան ուղարկել էին: Նա չի համարձակվել հանդիպել իր հակառակորդին բաց դաշտում, սակայն համբերությամբ սպասել է, մինչև թշնամու մոտ սով տարածվի: Մեկնդի

պաշարների բացակայությունը հարկադրել է Միհրդատին նահանջել դեպի իր սահմանները: Լուկուլլոսի ժամանումը որևէ օգտակարություն չի ունեցել պաշարված քաղաքների համար:

Պոնտական բանակի նահանջի ընթացքում, Լուկուլլոսը խիզախել է Միհրդատին գրոհել *Հռինդակոս* գետի մոտ և «հափշտակել է 6000 ձի, անհամար թվով բեռնակիր անասուններ և գերեվարել 15.000 մարդու»:

Երկրորդ անգամ Լուկուլլոսը հարձակվել է նրա վրա Գրանիկոս գետի մոտ, «գերեվարել մեծ թվով մարդկանց և սպանել 20.000 մարդու»:

Հռոմեացի զորավարին աջակցել են հրաշագործ երևույթներ: Մի անգամ, երբ նա նախապատրաստվում էր ճակատամարտի, հանկարծ երկինքը ճայթել է, և տեսել են, թե ինչպես է մի մեծ հրե մարմին ընկնում երկու ճամբարների միջև: Ահաբեկված բանակները բաժանվել են: Մի անգամ էլ, աստվածուհու համար բուծված սուրբ երինջը լքել է հոտը, միայնակ լողալով անցել նեղուցը և ներկայացել զոհաբերության՝ [Միհրդատի կողմից] պաշարված Կիզիկոս: Միաժամանակ, աստվածուհին երազում խոստացել է «պոնտացի փողհարի դեմ բերել լիբիացի սրնգահարին», այն է՝ հարավային կատաղի քամի բարձրացնել Միհրդատի մեքենաների դեմ, այն կարծես թե տեղի է ունեցել հաջորդ օրը: Մի անգամ էլ փոքրիկն է օգնության հասել Լուկուլլոսին. «Երբ Միհրդատը հապճեպ փախուստի է դիմել դեպի Պոնտոս, վրա է հասել կատաղի փոթորիկը, որը նրա նավերը քշել-տարել է կամ ջրասույզ արել»:

Այսպես են ջանադիր պատմիչները ներկայացրել «երեսուն բյուրի՝ նվազագույնը 300.000 մարդկանց, թե՛ մարտիկների և թե՛ բանակին հետևողների» կործանումը, որից հետո հաղթանակած Լուկուլլոսի կողմից հետապնդվող Միհրդատը ճողոպրել է Պոնտոս:

Խիստ կասկածելի է, որ Միհրդատի բանակի թվաքանակը կարող էր հասնել 300.000-ի: Չափազանցությունները և անհավանական գունազարդումները, որոնք նպատակաուղղված էին հավատ ներշնչելու Լուկուլլոսի հաղթանակի հանդեպ, վկայում են միայն հակառակը: Ոչ թե հռոմեացի զորավարի սուրը, այլ սովն է հարկադրել Միհրդատին դիմել նահանջի:

«Շատերը Լուկուլլոսին խորհուրդ են տվել հետաձգել պատերազմը»: Դա նշանակում է, որ զորավարը կամ նրա մերձավորները տատանվում էին ձեռնամուխ լինելու Միհրդատի հետապնդմանը, ինչը նրա հաղթանակը կասկածելի է դարձնում:

Չնայած այս խորհուրդներին, Լուկուլլոսը վճռել է շարժվել Միհրդատին ընդառաջ: Նա անցել է Բյութանիան և Գալատիան ու մտել Պոնտոսի թագավորություն: Սկզբնական շրջանում սովն այնքան լայն չափերի է հասել,

որ «նա պարտադրել է իրեն հետևել 30.000՝ իրենց ուսերի վրա ցորենի մեկական մեդիմն տանող գալատացիների»:

Սակայն, առաջ ընթանալով, նրանք հայտնվել են այնպիսի առատության մեջ, որի պայմաններում մեկ եզը դաշտում վաճառվում էր մեկ դրաքմեով, իսկ մեկ ստրուկը՝ չորս:

Արշավանքի ընթացքում հռոմեացիները սկսում են հարձակումներով կողոպտել և ասպատակել տարածաշրջանը՝ մինչև Թեմիսկիրա և Թերմոդոնի հարթավայրերը:

[Զինվորները] սկսում են տրտնջալ՝ Լուկուլլոսին մեղադրելով այն բանի համար, որ նա ոչ մի քաղաք չէր գրավում [ռազմական] ուժով, որպեսզի դրանք հանձներ եկամտաբեր կողոպուտի (ինչպես Ամիսոս քաղաքը): Նրան հանդիմանում են դանդաղաշարժության և երկրորդական ամրոցների ու քաղաքների առջև երկարատև կանգառների համար, ինչը Միհրդատին հնարավորություն էր ընձեռում ամրանալ: «Ինձ էլ հենց այդ է պետք,– ասում էր նա իրեն արդարացնելու համար,– ես դիտավորյալ եմ դանդաղում: Թող Պոնտոսի արքան նորից հզորանա և կռվի համար բավականաչափ զորք հավաքի, որպեսզի մնա տեղում և մեր մոտենալուց չփախչի: Կամ դուք չե՞ք տեսնում, որ նրա թիկունքում անապատային անսահման տարածություններ են, իսկ կողքին Կովկասն է, լեռնային հսկայական մի երկրամաս խոր ձորերով, որտեղ կարող են ապաստան գտնել ու պաշտպանվել թշնամու հետ հանդիպելուց խուսափող նույնիսկ հազար արքաներ: Բացի այդ, Կաբիրայից մինչև Հայաստան ընդամենը մի քանի օրվա ճանապարհ է, իսկ Հայաստանում թագավորում է Տիգրանը, արքայից-արքան, որն իր զորքով փակում է պարթևների ճանապարհը դեպի Փոքր Ասիա, իսկ հունական քաղաքային համայնքները վերաբնակեցնում է Մարաստանում, այդ արքան նվաճել է Ասորիքն ու Պաղեստինը, իսկ Սելևկյան տոհմի թագավորներին մահվան է մատնել ու գերության տարել նրանց կանանց ու դուստրերին: Եվ այդ մարդը Միհրդատի բարեկամն է, նրա փեսան: Եվ եթե Միհրդատը դիմի նրա պաշտպանությանը, ապա նա Միհրդատին չի թողնի փորձանքի մեջ և պատերազմ կսկսի մեր դեմ: Չլինի այնպես, որ շտապելով Միհրդատին դուրս քշել իր տիրույթներից, հանդիպենք Տիգրանին ու փորձանքի գանք: Քանզի նա արդեն վաղուց առիթ է փնտրում մեր դեմ պատերազմելու. իսկ նա առավել հարմար ի՞նչ առիթ կարող է գտնել, քան արքայական ազգակցին փորձանքի մեջ օգնելը: Ինչո՞ւ դրան ձգտենք. ինչո՞ւ սովորեցնենք Միհրդատին, թե ում օգնությանը դիմի մեր դեմ պայքարելիս: Ինչո՞ւ նրան մղել Տիգրանի գիրկը, երբ ինքն այդ չի ուզում և այն համարում է անպատվություն: Ավելի լավ չի՞ լինի, եթե

նրան ժամանակ տանք հավաքելու իր սեփական ուժերը և նորից ոգևորվելու. այնժամ մեզ մնում է կռվել ոչ թե մարերի և հայերի, այլ կոլխերի, տիբարենների և կապադովկիացիների դեմ, որոնց մենք բազմիցս հաղթել ենք»[1]:

Լուկուլլոսն Ամիսոսի առջև մնացել է երկար: Ձմռան ավարտից հետո նա պաշարման ղեկավարումը հանձնարարել է Մուրենային, իսկ ինքը գնացել Կաբիրայում ճամբարած Միհրդատին ընդառաջ: Միհրդատն ուներ 40.000 հետևակային և 4000 հեծյալ բանակ: Միհրդատը պարտվել է և փախել Հայաստան՝ Տիգրանի մոտ: Կաբիրան և այլ բերդամրոցներ հանձնվել են Լուկուլլոսին, այն գանձերով, որոնք գտնվում էին այնտեղ: Միհրդատի քույր *Նիսսան* գերեվարվել է: Մյուս քույրերը և [արքայի] կանայք, որոնք թվում է, թե գտնվում էին անվտանգության մեջ, սպանվել են Միհրդատի հրամանով, որը փախուստի ընթացքում, շտապ նրանց մոտ է ուղարկել ներքինի Բակքիսին՝ նրանց թունավորելու համար: Նրանց թվում էին արքայի երկու՝ շուրջ քառասունամյա չամուսնացած քույրերը՝ Ռոքսանան և Ստատիրան և նրա հույն տիկնանցից երկուսը՝ Բերենիկեն և Մոնիմեն:

Լուկուլլոսն առաջ է ընթացել մինչև *Տալավրա* և այդտեղ տեղեկացել, որ Միհրդատը դրանից չորս օր առաջ փախել է Հայաստան՝ Տիգրանի մոտ: Նա վերադարձել է, հպատակեցրել քաղդեացիներին և տիբարեններին, նվաճել Փոքր Հայքը և անհրաժեշտ՝ Ապպիոս Կլավդիոսին ուղարկել Տիգրանի մոտ՝ պահանջելու Միհրդատին:

Այնուհետև, Լ[ուկուլլոսը] գնացել է Ամիսոս, որի պաշարումը շարունակվում էր: Քաղաքը գրավվել է: Լ[ուկուլլոսն] ուղղություն է վերցրել դեպի Ասիայի քաղաքները՝ պայքարելու համար կապալառուների և վաշխառուների դեմ, որոնք կախման մեջ էին պահում բնակչությանը: Սուլլան Ասիա պրովինցիային պարտադրել էր 20.000 տաղանդի հասնող հարկ: Ասիան վարձակալներին սակայն վճարում էր կրկնակին՝ 40.000 տաղանդ: Բարձրացնելով վաշխառուական տոկոսը, վարձակալները պարտքը հասցրել էին մինչև տասներկու բյուր տաղանդի (120.000 ?!): [Լուկուլլոսի միջամտության շնորհիվ] չորս տարվա ընթացքում բոլոր պարտքերը վճարվել են:

***Վաշխառուները բողոքել են Հռոմ՝ Լուկուլլոսի դեմ:***

---

[1] Plutarchi, Lucullus, 11(5).

## Իրադարձությունների ժամանակագրությունը

*Բյութանիայի վերջին՝ Նիկոմեդես [III] թագավորը վախճանվել է 74 թվականին: Գոյություն ունի Նիկոմեդեսի չորեքդրամյան՝ թվագրված բյութանական թվարկության 224 թվականով (74 թ. հոկտեմբ[եր]-73 թ. [հոկ]տեմբեր)[1]: Ըստ Սալլյուստիոսի՝ Պլուտարքոսը հաղորդում է[2], որ Լուկ[ուլլոսն] իր դեմ է տրամադրել զինվորներին, նրանց պարտադրելով երկու ձմեռ անընդմեջ անցկացնել ճամբարում, առաջինը՝ Կիզիկոսի առջև (այն է՝ 73-[7]2 թթ.), հաջորդը՝ Ամիսոսի (այն է՝ 72-71 թթ.):*

*Ըստ Փլեգոն Տրալլացու՝ 177-րդ օլիմ[պիադայի] առաջին տարին Լուկ[ուլլոսն] անց է կացրել Կաբիրայի առջև[3]: 177-րդ օլիմ[պիադան] համապատասխանում է 72-68 թվականներին: Առաջին տարին սկսվում է 72 թ. օգոստոսից-71 թ. օգոստոսը:*

*Միհրդատը փախել է Հայաստան 71 թ. օգոստոսին՝ Կաբիրայի պարտությունից հետո, նույն 71 թ. աշնանը:*

*Կաբիրայի գրավումից և Միհրդատի փախուստից հետո է Լուկուլլոսի աներորդի՝ Ապպիոս Կլավդիոսին հանձնարարվել գնալ Տիգրանի մոտ և նրանից պահանջել՝ հանձնել Միհրդատին:*

Նախ Ապպիոսին ուղեկցել են *թագավորական պահակախմբի անդամները*, որոնք նրան պարտադրել են բազում օրեր տևած և անօգուտ տեղաշրջապտույտ կատարել: Այնուհետև, ազատարձակ մի ասորի նրան տեղեկացրել է ուղիղ ձգվող ճանապարհի մասին: Ապպիոսն այդ ժամանակ ազատ է արձակել իր բարբարոս ուղեկիցներին, անցել է Եփրատը և մի քանի օրից ժամանել Անտիոք, որը կոչվում էր Եպիդափնե: Այստեղ նա Տիգրանին սպասելու կարգադրություն է ստանում: Թագավորը *բացակայում էր և զբաղված էր* Փյունիկիայում: Ապպիոսը հռոմեացիների կողմն է գրավում երկրի բազմաթիվ իշխանների և դրանց թվում՝ Գորդիենեի [Կորդուք] թագավոր *Զարբիենոսին*, որոնք ենթարկվում էին հային՝ զղջումի զգացումով:

Ապպիոսի դեսպանության պատմությունը պատկանում է հենց իրեն՝ դեսպանին: Այս դեսպանության զավեշտական և ավելի քան տարօրինակ

---

[1] **Catalogue du Musée Britannique, p. 215, № 8. Eutropius, VI, 6.**

[2] **Plutarchi, Lucullus, 23.**

[3] **C. Müller, Fragmenta historicorum graecorum, t. III, p. 606.**

բնույթը գրեթե չի համապատասխանում ամենավաղնջական ժամանակներից ի վեր Արևելքում ընդունված ծիսակատարությանը:

Ըստ միջազգային համաձայնության կամ սովորույթի՝ արքայի մոտ գնացող դեսպանությանը սահմանում դիմավորում էին արքայի գործակալները և առաջնորդում մայրաքաղաք: Ովքե՞ր են արքայի այդ ուղեկիցները: Անտարակույս, պաշտոնյաները, որոնց արքան կարգադրել է ընդունել և առաջնորդել դեսպանին իր մոտ: Ազատագրված ասորու պատմությունը զարմանալի է: Նա կարող է լինել միայն դեսպանության ծառայության մեջ գտնվող գաղտնի լրտես:

Դեսպանին, հավանաբար, ընդունել են Տոմիսա կանգառում և Ծոփքով, Միգդոնիայի ուղղությամբ, ուղեկցել դեպի Տիգրանակերտ կամ ավելի հեռու՝ Անտիոք: Ապպիոսին հաջողվել է մոլորության մեջ ձգել իրեն հսկող ուղեկիցներին, քաղաքական բանագնացներին և մի ազատարձակ ասորու միջոցով «իր կողմը հակել երկրի բազմաթիվ իշխանավորների, որոնց թվում էր նախ և առաջ՝ Կորդուքի բազավոր *Զարբիենոսը*»:

Դժվար է ըմբռնել, թե ինչո՞ւ պետք է ուղեկիցները նրան պարտադրեին անօգուտ շրջապտույտ կատարել: Ինքն Ապպիոսն է առաջ ընթացել մինչև Կորդուք՝ այնտեղ բանսարկելու նպատակով:

Ոչ հեռավոր անցյալում հպատակեցված բազմաթիվ քաղաքներ կարող էին գաղտնաբար Ապպիոսի մոտ պատգամավորներ ուղարկել: Նման պարագան ավելի է համապատասխանում դեսպանության առաքելությանը: Նա նրանց խոստացել է Լուկուլլոսի օժանդակությունը և խորհուրդ տվել այդ պահին հուզումների տուրք չտալ: Հայերի տիրապետությունն «անհանդուրժելի էր և ճողկալի»: Սա բացառապես անձնական գնահատական է, որը պատկանում է կամ Պլուտ[արքոսին], կամ Ապպիոսին: Ինչ մենք գիտենք անձամբ Պլուտարքոսից, այն է, որ ընդհակառակը՝ հենց հունական քաղաքները և ամբողջ Փոքր Ասիան էին ատում հռոմեացիների տիրապետությունը: Պլուտարքոսը հավաստում է, որ Հռոմի վաշխառուների և կապալառուների կողմից դրսևորվող անհանդուրժելի վերաբերմունքին էին արժանանում ոչ միայն Բյութանիայի, այլ համայն Ասիայի քաղաքները: Այս պատճառով են Միհրդատին ամենուր ընդունել պատրաստակամությամբ[1]: Նույն Պլուտարքոսն ասում է, որ «վաշխառուներն ու կապալառուները հարկադրում էին մասնավոր անձանց վաճառել իրենց բարե-

[1] Plutarchi, Lucullus, 7.

կազմ որդիներին կամ կույս դուստրերին, իսկ քաղաքացիներին՝ հանձնել ընծաները, նկարներն ու սուրբ պատկերները» և այլն[1]:

«Փոխհյուպատոսների գիշատչությունը, վարձակալների կողոպուտները, դատավորների օրինազանցությունն այստեղ այնպիսի ատելություն են առաջ բերել հռոմեացիների անվան հանդեպ, որ Ասիան տարածում է ձեռքերը,– ձայնում է մեկ այլ պատմիչ,– և աղերսարկու բացականչություններով կանչում Միհրդատին»[2]:

Ասիայում հռոմեացիների մասին ունեին աննպաստ ու պարսավելի պատկերացում. «Հռոմի հիմնադիրները, իրենց սեփական կարծիքով, կերակրվել են էգ գայլի կողմից և իրենք գայլերի ժողովուրդ էին, անհագորեն ծարավի արյան և իշխանության, իսկ ինչ վերաբերում է հարստություններին՝ ագահ և ընչաքաղց»[3]:

Այս պայմաններում, չի կարելի զարմանալ այն մոլեգնությունից, որով այնպիսի քաղաքներ, ինչպես Սինոպը, Ամիսոսը, Ամասիսը, դիմադրում էին Լուկուլլոսի բանակին: Այդ դեպքում ինչո՞ւ պետք է Միհրդատի տիրապետությունը լիներ ցանկալի, իսկ Տիգրանինը՝ «անհանդուրժելի կամ նույնիսկ նողկալի»: Պատճառաբանում են, թե Տիգրանը դարձել էր «անճկաբազրելի հանդուգն ու սնապարծ և ինքնագոհ՝ իր աներևակայելի հաջողությունների հետևանքով: Նա հպատակեցրել է բազմաթիվ ազգությունների, կոտրել պարթևների հզորությունը և Միջագետքը լցրել հույներով, որոնց, մեծ քանակով, տեղափոխել էր Կիլիկիայից և Կապադովկիայից: Նա վրանաբնակ արաբական ցեղերին տարագրել էր իրենց երկրից և բնակեցրել իր հարևանությամբ՝ առևտրում օգտագործելու նպատակով: Նրան շրջապատում էր թագավորների մի ամբողջ բազմություն. դրանցից չորսին նա մշտապես պահում էր իր կողքին՝ որպես սպասավորների, որոնք կարճ քիտոնը հագին ոտքով վազում էին նրա առջևից՝ երբ նա ձիով դուրս էր գալիս, իսկ երբ ընդունելության ժամանակ նստած էր՝ նրանք նրա կողքին մնում էին կանգնած»:

Ահա, հիրավի, զարմանք հարուցող պատճառները: Արդյո՞ք նվաճումը պատճառ է ատելության համար: Եթե դա այդպիսին լիներ, հռոմեացիների անունը պետք է, որ աշխարհում լիներ ամենազազրելին: Այն, որ Տիգրանը Միջագետքը լցրել է հույներով՝ ավելի քան չափազանցություն է: Մենք գիտենք, որ հայոց թագավորը Կապադովկիայում և Կիլիկիայում գրավել է

[1] Plutarchi, Lucullus, 20.

[2] Justini historiarum philippicarum ex Trogo Pompeio, XXXVIII. 7.

[3] Op. cit., XXXVIII. 6.

տասներկու քաղաք, որոնց բնակչության մի մասը տեղահանվել է՝ տեղավորվելու համար նոր մայրաքաղաք Տիգրանակերտում: Ոչինչ հայտնի չէ այն մասին, թե արդյո՞ք այս տեղահանումը տեղի է ունեցել ուժով, թե տարերայնորեն: Տիգրանակերտն առաջին կամ վերջին քաղաքը չէր, որն Ասիայում հիմնադրվել է այս ձևով:

Կույր զայրույթով ի վնաս Տիգրանի՝ կներկայացնեն նույնիսկ այն, ինչն արժանի է գովեստի և արժանավոր գնահատականի. քոչվոր արաբները հարկադրված էին փոխել իրենց կենսակերպը, դառնալ նստակյաց՝ «առևտրում օգտագործելու նպատակով»:

Ինչ վերաբերում է Տիգրանի առջև վազող չորս թագավորին, ապա դիտարկումը ճշգրիտ է, սակայն, վերջին կետում աղավաղված: Խոսքն առնչվում է բդեշխներ՝ պիտիաշխներ կոչվող չորս փոխարքաներին, որոնք շրջապատում էին հայոց թագավորին և որոնց մենք ավելի ուշ տեսնում ենք Արշակունյաց արքունիքում առաջին շարքերը զբաղեցնելիս: Միանգամայն անհեթեթ է ասելը, թե վերջիններս ոտքով վազում էին թագավորի ձիու առջևից: Նրանց կանխամտածված շփոթել են թագավորին ուղեկցող սուրհանդակների հետ, որոնք վազում էին նրա առջևից, երբ նա ձիով դուրս էր գալիս: Արևելքին բնորոշ համառությամբ, այս սովորույթը Պարսկաստանում պահպանվել է մինչև մեր օրերը, նվազագույնը խաների՝ շահի տիտղոսակիր ստորակաների մոտ[1]: Մեր սկզբնաղբյուրի ընդգծված կիրքը, որը հանգում է ամենուր ծիծաղելին փնտրելուն, հաճախ եզրափակվում է միայն իրեն ծիծաղելի դարձնելով՝ իր դատարկաբանության հետևանքով:

Ապպիոսը վերջապես ներկայացել է թագավորին և հայտարարել, որ իր առաքելությունը նպատակ ունի կամ տանել Միհրդատին և կամ Տիգրանին պատերազմ հայտարարել: Լուկուլլոսի բանագնացին թվացել է, թե թագավորի ժպտացող դեմքին նկատել է հուզմունք, որի պատճառը եղել է իր անկաշկանդ ելույթը, «ինչը, հավանաբար, քսանհինգ տարուց ի վեր, այն է՝ իր թագավորության կամ ավելի ստույգ՝ բազում ժողովուրդների ծանակելու ընթացքում նա լսում էր առաջին անգամ»: Տիգրանն Ապպիոսին պատասխանում է, որ ինքը Միհրդատին չի հանձնի, իսկ եթե հռոմեացիները պատերազմ սկսեն, նրանց ետ կմղի:

Նա Ապպիոսին ուղարկում է թանկագին նվերներ և քանի որ վերջինս մերժել էր դրանք ընդունել, ուղարկում է առավել թանկարժեք նվերներ: Այդ ժամանակ, Ապպիոսը վերցնում է միայն մեկ գավաթ, ետ է ուղարկում մյուս բոլորը և շտապում վերադառնալ Լուկուլլոսի մոտ:

---

[1] 1917 թ. [անընթեռնելի անուն] համար ճանապարհի հարթող:

Այս պատմության հեղինակն, անտարակույս, անձամբ Ապպիոսն է: Նրանից բացի ոչ մեկը չէր կարող իրազեկ լինել Տիգրանի կողմից նրա ընդունելության տեսարանի այս մանրամասներին: Ապպիոսը, ըստ իր խոսքերի՝ ցուցաբերել է համարձակություն, և Տիգրանը, չնայած նրա անկաշկանդ ելույթին, բավականին մեծահոգի է գտնվել՝ նրան նվերներով պատվելու համար: Այդ դեպքում որտեղի՞ց է սկիզբ առնում այս վերամբարձ երանգը, բազավորի նկատմամբ այս ծաղրը: Ապպիոսն անկեղծ չէ: Թվում է, թե նա խոցված է, սակայն, այդպես է վարվում: Նախ նա սոսկ Լուկուլլոսի ուղերձը տանողն էր: Ամենևին տեղին չէր [Հայոց արքայի առջև] ելույթով հանդես գալը: Այնուհետև, քաջ հայտնի է արքունիքի սովորույթը, վաղնջական ժամանակներից ի վեր արքայից-արքայի արքունիքում որդեգրված արարողակարգը: Նա, ով ցանկանում էր ներկայանալ արքայից-արքային, պետք է ծնկի գար: Երբ Արտաքսերքսես [II]-ի արքունիք ժամանած Կոնոն Աթենացին ցանկություն է հայտնել անձամբ խոսել բազավորի հետ, խիլիարքոսը [հազարապետը]՝ պաշտոնատար անձը, որն արքունիքում զբաղեցնում էր երկրորդ պաշտոնը և որից կախված էր ընդունելության հնարավորության ընձեռումը[1], զգուշացնում է աթենացուն, որ նա պետք է խոնարհվի բազավորի առջև, եթե նա անձամբ ներկայանա, իսկ ավելի լավ կլինի, թերևս, զրուցելու փոխարեն արքային գրավոր դիմել:

Եթե Ապպիոսը ցանկացել է, որ իրեն ներկայացնեն բազավորին, ապա նա պետք է բազավորին արժանացներ այն պատիվներին, որոնք պահանջում էին արարողակարգն ու սովորույթը, այն է՝ ծնկի գալ Տիգրանի առջև: Եթե նա այնքան հպարտ էր, որ չի ցանկացել հետևել արքունիքի արարողակարգին, ապա նա չէր համարձակվի տեսակցել բազավորին, առավել ևս անկաշկանդ ելույթ ունենալ և նկատել նրա շփոթված դեմքը: Երկուսից մեկը՝ կամ Ապպիոսը չի տեսել Տիգրան բազավորին՝ անձամբ նրան չհանձնելով Լուկուլլոսի ուղերձը, կամ եթե նրան տեսել է՝ ապա ծնկի է եկել նրա առջև: Դարազաներից մեկում՝ նրա պատմությունը սոսկ անպատակ սնապարծություն է, իր համար համբավ ձեռք բերելու ցանկությամբ տոգորված երիտասարդի պարզունակ պարծենկոտություն, մյուսում՝ նրա մաղձը պայմանավորված է ստորացման այն դառնությամբ, որը ճաշակել է Տիգրանի արքունիքում:

Ըստ մեր պատմիչի՝ Տիգրանը մինչ այդ չի ցանկացել տեսնել իր դժբախտ ազգականին՝ Միհրդատին և կամ զրուցել նրա հետ, այլ նրան

[1] **Cornelius Nepos**, Conon, 3: necesse est enim, si in conspectum veneris, venerari te regem (quod προσκυνεῖν illi vocant). Հմմտ. հայերեն «երկիր պագանել» բառերը:

պահել էր իրենից հեռու՝ ճահճոտ և առողջության համար վնասակար վայրերում՝ Պոնտացուն վերաբերվելով քամահրանքով ու արհամարհանքով, ինչպես բանտարկված մեկին: Ապպիոսի դեսպանությունից հետո, Տիգրանը Միհրդատին հրավիրել է իր արքունիք և նրան արժանացրել պատիվների ու վերաբերվել բարեկամաբար: Թագավորական ապարանքում նրանք ունեցել են իրենց փոխադարձ կասկածները փարատող գաղտնի խոսակցություններ՝ ի դժբախտություն, սակայն, իրենց բարեկամների, որոնց վրա էին բարդում մեղքը: Այդ բարեկամների թվում էր և Մետրոդորոս Սկեպսիացին, հաճելի մի մարդ, բանիմաց, որին անվանում էին Միհրդատ թագավորի հայրը: Միհրդատը նրան ուղարկել էր իր փեսայի մոտ՝ հռոմեացիների դեմ պայքարում օգնություն հայցելու համար: «Սակայն, դու ով Մետրոդորոս,– հարցրել էր Տիգրանը,– դու ինձ ի՞նչ խորհուրդ ես տալիս այդ առնչությամբ»: Նա պատասխանել էր, որ իբրև բանագնաց՝ ինքը Տիգրանին խորհուրդ է տալիս օգնել, բայց իբրև խորհրդատու՝ մերժել:

Տիգրանը հավանաբար Միհրդատին է փոխանցել այս պատասխանը և վերջինս Մետրոդորոսին սպանել էր: Այդուհանդերձ, պատմիչն անձամբ խոստովանում է, որ Մետրոդորոսի վախճանը վճռված էր վաղուց ի վեր: Այսպիսով, Տիգրանը նրա մահվան հետ որևէ առնչություն չուներ: Այդուհանդերձ, պատմիչը պատրաստ է այդ բանի համար ևս մեղադրել Հայոց թագավորին:

Մեկ այլ հույն՝ իր երկրից արտաքսված հռետոր *Ամփիկրատեսը*, գնացել էր Արևելք. նրան ընդունել էին Տիգրանի արքունիքում: Բայց անշնորհակալ փախստականը շուտով դարձել է կասկածյալ, նրան արգելվել է հույների հետ առևտուր անելը և նա ինքնասպան է եղել սովամահության մատնվելով:

Հնարավոր է, որ Տիգրանն ու Միհրդատը վճռել էին ասպատակել Լիկաոնիան և Կիլիկիան: Լուկուլլոսը, հավանաբար, զարմացել է, որ հռոմեացիների դեմ պատերազմի մեջ ընդգրկվելու մտադրություն ունեցող Տիգրանը չի համագործակցել Միհրդատի հետ նրա հզորության բուռն վերելքի ժամանակաշրջանում:

Հեղինակը ոչ մի առիթ բաց չի թողնում թագավոր Տիգրանին պատեհ անպատեհ զրպարտելու համար: Այն բանից, որ Տիգրանը ժամանակին չի սատարել Միհրդատին՝ հռոմեացիների դեմ պայքարում, հետևում է, որ հռոմեացիների հետ առճակատման մեջ ընդգրկվելը նա իր շահերին համապատասխանող չի համարել: Նա կարող էր հյուրընկալել մի պարտվածի, եթե նա նույնիսկ իր ազգականը չլիներ, առանց նրա կողմից հանդես գալու, առանց կարծելու, որ իր մարդկային դիրքորոշումը կարող է հռո-

մեացիների հետ գժտության առիթ ծառայել: Տիգրանը չէ, որ պատերազմ է սկսել, այլ բախտախնդիր Լուկուլլոսը: Չկա, այսպիսով, ոչ մի պատճառ հանդիմանելու Տիգրանին պատերազմը սկսելու համար, որի մեղավորը Լուկուլլոսն էր: Եթե նա ձգտում էր պատերազմի, Միհրդատին այդքան մեկուսացված չէր պահի «ճահճոտ և առողջության համար վնասակար վայրերում», այլ նրան կհրավիրեր իր մոտ՝ համատեղ մշակելու պատերազմի ծրագիրը, որը հարկ էր սկսել: Ճիշտ է նաև այն, որ Տիգրանն այդ ժամանակ զբաղված լինելով Փյունիկիայի հպատակեցմամբ, գործնականորեն չէր կարող հետաքրքրվել իր աներոջ ճակատագրով:

Փիլիսոփա Մետրոդորոսին վերաբերող զրույցն առասպելական է: Նա վաղուց ի վեր թողել էր Միհրդատի պալատը՝ Տիգրանի պալատ հասնելու համար: Անտարակույս, նրան հրավիրել էր Տիգրանը՝ հանձնարարելու գրել իր նվաճումների պատմությունը: Մետրոդորոսն այդ մասին գրել է մի քանի գիրք[1] (19): 70 թ. Մետրոդորոսը ծառայության մեջ էր գտնվում Տիգրանի մոտ և ոչ մի դեպքում չէր կարող Միհրդատի կողմից նրա մոտ առաքելություն իրականացնելու հանձնարարություն ստացած լինել: Տիգրանի մոտ ապաստանած Միհրդատն ինչպե՞ս կարող էր համարձակվել հայկական արքունիքում սպանել քաղավորական պատմիչին, առանց վտանգվելու հրահրել իր տիրակալի՝ Տիգրանի դժգոհությունը, որի օգնությունն այդ ժամանակ աղերսում էր: Մետրոդորոսի մահվանն առնչվող զրույցից՝ իբրև միտումնավոր մտացածին կեղծիքից, հարկ է հրաժարվել[2]:

Լուկուլլոսն իր ժամանակն անցկացնում էր «հաճույքների և զվարճությունների մեջ», երբ ժամանել է նրա բանագնաց Ապպիոսը և բերել իր հյուրին հանձնելուց հրաժարվող Տիգրանի պատասխանը: Այս մերժումը լինելով բարոյական տուրք հյուրընկալության և բարեկամության իրավունքին, բացարձակապես չի կարող դիտվել իբրև casus belli (20): Հռոմեացի զորավարը, այդուհանդերձ, համակված ռազմատենչ կրքով, հակված էր պատերազմի մեղքը բարդել հայոց թագավորի վրա: Իզուր չէր, որ Հռոմում [արդեն] բարձրաձայն մեղադրում էին Լուկուլլոսին, որ «նա մի պատերազմից մյուսին էր ձգտում ոչ թե պետության շահերից ելնելով, այլ իր հրամանատարությունն երկարաժամկետ դարձնելու և հասարակական վտանգներն իր օգտին ծառայեցնելու համար»:

---

[1] **Scholia in Apollonium Rhodium**, IV. 133.

[2] Թ. Ռեյնաքի ենթադրությունը, ըստ որի՝ Մետրոդորոսի աշխատությունը չէր կարող հաջորդել 70 թ., չի կարող ընդունելի լինել, քանի որ հիմնվում է 70 թ. նրա կարծեցյալ վախճանի վրա: **[Th. Reinach,]** Mithridate Eupat[or roi de Pont, Paris, 1890,] p. 428-429.

Մինչ Տիգրանի դեմ ռազմարշավի ձեռնամուխ լինելը, Լուկուլլոսը լավ է հաշվի առել իր համար բարեհաճորեն դասավորված հանգամանքները: Միհրդատի որդի Մաքարեսը՝ Բոսպորի տիրակալը, հենց նոր՝ Լուկուլլոսի կողմն անցնելու համար դավաճանել էր իր հորը և Լուկուլլոսին ուղարկել հազար ոսկի արժողությամբ մի պսակ: Միհրդատի զորավար (21) Դորիլաոսը, չնայած Պլուտարքոսի հաղորդած տեղեկությանը, ըստ որի՝ նա իբր սպանվել է Կաբիրայի ճակատամարտից հետո, իրականում հռոմեացիների հետ ընդգրկվել էր գաղտնի բանակցությունների մեջ[1]: Միհրդատին դավաճանել էր նրա ազգական Փենիքսը: Միհրդատն իր թագավորությունում այլևս չուներ ոչ մի հենարան, քանի որ հունական քաղաքները կործանվել էին, բերդամրոցները հանձնվել Լուկուլլոսին: Դանդարիոսների՝ [բարբարոս ցեղերից մեկի] իշխան Օլթակոսը[2], սկյութ իշխան Սաքադոեն լքել էին Միհրդատին: Կապադովկիայի թագավոր Արիոբարզանեսը Լուկուլլոսի դաշնակիցն էր:

Հռոմեացի զորավարը նախապես ծանոթացել էր իրավիճակին, և նրան հաջողվել էր դաշնակիցներ ձեռք բերել Տիգրանի կայսրությունում: Ապպիոսի առաքելությունն իրականում հետապնդում էր Տիգրանի սատրապներին նրանից վանելու նպատակ: Լուկուլլոսի ջատագովը հարկադրված է խոստովանել, որ Լուկուլլոսն Ապպիոսի միջնորդությամբ Կորդվաց թագավորի հետ գաղտնի դաշնագիր էր կնքել[3]: Լայնորեն շռայլված խոստումների շնորհիվ հռոմեացի զորավարն իր կողմն էր գրավել արաբական արքայիկներին, որոնք Լուկուլլոսին էին հանձնելու այն ամենն, ինչ իրենց էր պատկանում, ինչպես նաև ծոփացիներին, որոնք բոլորը պատրաստվում էին զորավիգ լինել նրան:

Լուկուլլոսն իր ձեռքերը տարածել էր նույնիսկ դեպի պարթևների թագավորը՝ նրանից պահանջելու՝ վերհիշել [և հավատարիմ մնալ] 92 թվականին ընդդեմ Տիգրանի կնքված նախկին դաշինքին:

Հենց որ Լուկուլլոսի դիվանագիտությունը՝ որքան գաղտնաբար, նույնքան և ճենգաբար հող է նախապատրաստել, նա իրեն պատրաստ է համարել ռազմարշավ ձեռնարկելու և «գնալ նետվելու անհամար հեծելազոր ունեցող ռազմատենչ ցեղերի տարածք, անծայրածիր մի երկիր, որն ամեն կողմից շրջապատված է խորունկ գետերով և ձյունապատ լեռներով»: Նրա քայլը խիստ համարձակ, զգուշության և բանականության շրջանակներից

[1] Strabo, XII. 3. 33. Plutarchi, Lucullus, 17.

[2] Plutarchi, Lucullus, 16; Appiani Mithridatica, 79.

[3] Նույնը, 29:

դուրս կբվար միայն նրանց, ովքեր նախապես և խիստ գաղտնիության պայմաններում արված նրա նախապատրաստությունների մասին տեղեկություններ չունենային: Ներխուժողը հույսը դնում էր նաև Տիգրանի այն ստորակաների վրա, ովքեր պարտավորվել էին իրեն աջակցել:

Հայաստան ներխուժելու համար Լուկուլլոսի ընտրած ճանապարհն ամենապերճախոս փաստարկն է առ այն, որ նա հիրավի հույսը կապում էր Տիգրանի կողմից հպատակեցված գահակալների ապստամբության հետ: Իրոք որ, եթե նա ցանկանում էր հարձակվել Տիգրանի վրա նրա մայրաքաղաքներում՝ Արտաշատում կամ Տիգրանակերտում, ինչպես հավաստիացնում է նրա [հռոմեացի] պատմիչը, հարկ էր, որ Արտաշատ գնալու համար նա հետևեր այն ճանապարհին, որը ձգվում էր Լյուկոս գետի և Եփրատի հովիտներով և մինչև Կարենիտիս (այս[օր]՝ Էրզրում), իսկ այնտեղից՝ Արաքսենե [Արաքսի հովիտ], որտեղ գտնվում էր Արտաշատը: Եթե նրա նշանակետը Տիգրանակերտը լիներ, հարկ էր միայն, որ նա իջներ Կապադովկիայով՝ իր դաշնակից Արիոբարզանեսի երկրով, առանց որևէ բարդության, հետևելով մեծ ճանապարհին մինչև Եփրատի վրա գտնվող Զևգմայի գետանցը, որտեղից նա Օսրոենեով, իսկ այնուհետև Միգդոնիայով կգնար դեպի Տիգրանակերտ: Այս երկու պարագայում նա որևէ առնչություն չէր ունենա « ձյունապատ լեռներին»:

Այնուամենայնիվ, նա նախընտրել է Մելիտենեի ճանապարհը և Տոմիսայի կամրջով ապաստակել է Ծոփքն ու շարունակել ճանապարհը մինչև Կորդուք՝ անշուշտ, ապստամբ թագավոր Զարբիենոսի հետ միավորվելու համար:

Լուկուլլոսը և նրա հետքերով նրա[ն գովերգող] պատմիչները, որոնք ավելի քիչ էին մտահոգված ճշմարտությամբ, բավականին ճարպիկ էին տխմար հրաշքներ հորինելու և զորավարի ճանապարհը դրանցով աոլեցուն դարձնելու համար: Պատմությունը վերածվում է դիցաբանության կամ բանաստեղծական մտացածին կեղծիքների:

Երբ Լուկուլլոսը մոտենում է Եփրատին, այն գտնում է ձմեռային անձրևներից վարարած: Սակայն, ինչպիսի՜ հրաշք: Եփրատը ցուցաբերել է հնազանդություն, հանկարծ վերադարձել իր հունը և զորավարի համար արագ և անսպասելի անցում է հարթել:

Հաջորդել է մեկ այլ հրաշք: Եփրատից այն կողմ արածում էին երինջներ, որոնք նվիրաբերված էին Արտեմիս դիցուհուն, այն է՝ Անահիտին: Նրանք ազատորեն թափառում էին մարգագետիններում, իրենց ճակատին կրելով աստվածուհու նշանը՝ խարանադրոշմ ջահը: Երբ բանակն անցել է Եփրատը, դրանցից մեկը բարձրացել է աստվածուհուն նվիրաբերված մի

[սրբազան] ժայռի վրա, այդտեղ կանգ է առել և խոնարհելով գլուխը ներկայացել Լուկուլլոսին՝ զոհաբերվելու համար: Լուկուլլոսը նաև մի ցուլ է զոհաբերում Եփրատին՝ այս երջանիկ անցումի համար:

Այս հրաշքը կյանքի կոչած երևակայությունն այնքան էլ բեղմնավոր չի եղել: Նույն բանը պատմել են Կիզիկոս քաղաքի առնչությամբ, բայց քանի որ զոհաբերության համար այն չի ունեցել սուրբ երինջ՝ սև երինջն է միայնակ լողալով անցել ծովը և ներկայացել զոհաբերվելու:

Հետևենք Լուկուլլոսի առաջխաղացմանը՝ ըստ համանման մտացածին բնույթի պատմության:

Անցման երկրորդ օրը և դրան հաջորդած օրերին Լուկուլլոսը Ծոփքի տարածքով առաջ է ընթացել, անցել Տիգրիսը և ներխուժել Հայաստան:

Նա, ով առաջինն է Տիգրանին հայտնել Լուկուլլոսի ժամանման մասին՝ գլխատվել է: Ոչ ոք այլևս չի համարձակվել Տիգրանին ասելու ճշմարտությունը: Տիգրանը՝ Ասիայի մեծ մասի միահեծան տիրակալը, նա, ով այդ ժամանակ յոթանասուն տարեկան էր և, այսպիսով, առնվազն տարիքի բերումով փորձառու, դյուրահավատ պատմիչի կողմից մեզ է ներկայացվել իբրև մանկամիտ հիմար, որը, անգիտակից իրեն շրջափակող պատերազմի բոցին, թույլ էր տալիս, որ քաղցր խոսքերով օրորելով իրեն քնեցնեն շողոքորթները, որոնք ասում էին, թե Լուկուլլոսը կարող էր լինել մեծ զորավար՝ եթե համարձակվեր սպասել Տիգրանին Եփեսոսի առջև և կամ Ասիայից հապճեպ փախած չլիներ՝ տեսնելով նրա բազմաբյուր զորքերը: Պատմիչը պնդում է, որ Տիգրանը «հասարակ, սովորական անձ էր, իսկ ամեն մարդ չէ, որ կարողանում է պահպանել իր ողջախոհությունը և չի մթագնում մեծ հաջողությունից, այնպես, ինչպես ամեն անձ չէ, որ կարողանում է քաջ դիմանալ մաքուր գինուն»: Վերջապես, Միթրոբարզանեսը [Մեռուժան] քաջություն է ունեցել Տիգրանին ասելու ճշմարտությունը: Նա անմիջապես ուղարկվել է Լուկուլլոսի դեմ՝ 3000 հեծյալի և բազմաթիվ հետևակայինների գլուխն անցած՝ հռոմեացի զորավարին կենդանի բերելու և այլոց կոտորելու հրամանով: Լուկուլլոսն ուղարկել է լեգատ Սեքստիլիոսին՝ 1600 ձիավորով և փոքր-ինչ ավելի հետևակայինով: Միթրոբարզանեսը զոհվել է կատաղի մարտում, իսկ նրա զորքը փախել է. դրա մի մասը սպանվել է, իսկ փոքր մասը փրկվել:

Տիգրանն այդ ժամանակ լքել է Տիգրանակերտը և նահանջել դեպի Տավրոս ու այստեղ կենտրոնացրել իր բոլոր ուժերը: Ցանկանալով նրան խանգարել՝ Լուկուլլոսն ուղարկել է Մուրենային՝ Տիգրանի համակենտրոնացրած զորքերին հետապնդելու և կորուստներ պատճառելու, իսկ Սեքստիլիոսին՝ արքային օգնության շտապող արաբական խոշոր զորամասը

կանգնեցնելու համար: Սեքստիլիոսը հարձակվել է արաբների, իսկ Մուրենան՝ մեծ բանակի համար անհարթ, երկար ու նեղ մի կիրճում՝ Տիգրանի վրա: Տիգրանը փախել է՝ թողնելով իր աղխը: Այս հաջողություններից հետո, Լուկուլլոսն առաջ է ընթացել դեպի Տիգրանակերտ և պաշարել այն:

Հարկ է միանգամայն անվստահությամբ վերաբերվել այս ամբողջ անիմաստ շատախոսությանը: Հազիվ թե հնարավոր լինի դրանից որոշ փաստեր քաղել՝ լուրջ պատմության մեջ ընդգրկելու համար: Լուկուլլոսն, ամենայն հավանականությամբ, ասպատակել է Հայաստանի սահմանները՝ առանց հավուր պատշաճի պատերազմ հայտարարելու: Ծոփքն առաջին երկրամասն էր, որտեղ նա մուտք է գործել: Միթրոբարզանեսը հարկ է փոխել Միթրոբուզանեսի: Նա ոչ այլ ոք է, եթե ոչ Ծոփքի տիրակալը, հավանաբար, Արտանեսի որդին, որը կրում էր իր պապ Միթրոբուզանեսի՝ Արիարաթեսի հովանավորյալի անունը: Ծոփքը հպատակեցրած Տիգրանը չէր վերացրել դրա թագավորական հարստությունը: Արտանեսի պարտությունից հետո նրան հաջորդել է որդին՝ իբրև երկրի տիրակալ և Տիգրանի ստորակա: Նա դիմավորել է հռոմեացի զավթիչներին, սակայն, գահընկեց է եղել և սպանվել: Լուկուլլոսը կամ նրա պատմիչն անիրազեկ են եղել տեղի աշխարհագրությանը: Տիգրիսի, ինչպես և Եփրատի անցումից հետո Լուկուլլոսը շարունակում էր գտնվել Ծոփքում՝ Միթրոբուզանեսի տիրույթում: Այսպես էր կոչվում Արևմտյան Տիգրիսի և Արածանիի միջև պարփակված ամբողջ երկիրը: Տիգրիսից այն կողմ ձգվող տարածաշրջանը, որը գտնվում էր դրա և Միգդոնիայի միջև, նախկինում մտնում էր Ծոփքի մեջ: Ճակատամարտի վայրը մատնանշված չէ: Պատմական սկզբնաղբյուրները, ընդհանուր առմամբ, վատ են տեղեկացված Լուկուլլոսի կարծեցյալ սխրանքների մրցասպարեզի տեղագրությանը, ինչը դրանց պատմությունը դարձնում է խիստ կասկածելի: Դրանցում անգամ պահպանվել է Սափի վայրի անունը, ուր գտնվում էր Տիգրանի արքունիքում վախճանված հռետոր Ամփիկրատեսի գերեզմանը, սակայն, դրանց հեղինակները ձեռնպահ են մնացել մեզ մատնացույց անելու Լուկուլլոսի հաղթանակների շնորհիվ նշանավոր դարձած վայրերը: Ո՞րտեղ է արդյոք զորավարն անցել Տիգրիսը՝ Միթրոբարզանեսի դեմ մարտնչելու համար, ինչպիսի՞ն է եղել նրա ռազմերթն այդ հաղթանակից հետո, նա գնում էր դեպի Տիգրանակերտ, թե՞ դեպի Կորդուք՝ ձեռք մեկնելու համար իր դաշնակցին, այս բոլոր հարցերի առնչությամբ [պատմագիրները] մեզ մատնում են կատարյալ անորոշության: Մեր տեղեկությունները, որոնք սկիզբ են առնում, ի վերջո, անձամբ Լուկուլլոսի ռազմական հաղորդագրություններից, տարօրինակ ձևով աղոտ են նույնիսկ մայրաքաղաք Տիգրանակերտի տեղանքի կապակցությամբ:

Հարկ է հաշվի առնել այս բոլոր առանձնահատկությունները, որոնք բացահայտում են Լուկուլլոսի արշավանքի պատմությունը՝ նախքան նրան ծափահարելու շուրջ վճիռ կայացնելը կամ Հռոմի փողոցներում նրա հաղթահանդեսին մասնակցելը: Լուկուլլոսյան փառաբանումների դեմ ընդդատ ծառանալու համար կարող է բավարար լինել միայն տեղանքի քարտեզի ուսումնասիրությունը:

Տիգրանակերտի տեղադրությունը բանավեճի տեղիք է տալիս: Մի բան է որոշակի, որ այն գտնվում էր Միգդոնիայում[1]: Հայ պատմիչը ճանաչում է Բնաբեղ կոչվող բերդամրոցը Ծոփքում և այն անվանում է քաղավորական բերդամրոց, որտեղ գտնվել են Արշակունի քաղավորների գանձերը[2]: Այն պահպանվում է մինչև մեր օրերը Մարդինից մի քանի կիլոմետր հեռավորության վրա և կրում նախկին՝ Բնաբեղ անունը: Բնաբեղը Տիգրանակերտ մայրաքաղաքի առաջապահ պահակետերից մեկն էր: Ճիշտ կլինեն, այսպիսով, դրա տեղը սահմանել Տել-Արմեն գյուղում[3], Մարդինի և Բնաբեղի մոտ (22):

Տոմիսայից Տիգրանակերտ ճանապարհն անտիկ դարաշրջանում անցնում էր, ինչպես այսօր, Ծովք լճի մոտակայքով, որը թուրքերեն բարգմանությամբ կոչվում է Գյոլջուք, այնտեղից, որտեղից սկիզբ էր առնում Տիգրիսը և այս գետի երկայնքով իջնում էր մինչև Միգդոնիայի հարթավայրը, մինչև Տիգրանակերտ: Այսպիսով, այս ճանապարհով Տիգրանակերտ գնալու համար Տիգրիսն անցնելու կարիքը չկա: Այս պարագային, Միթրոբարզանեսի հետ ճակատամարտը կարող էր տեղի ունենալ Խարբերդի արվարձաններում, որտեղ կարելի կլինի փնտրել Ծոփքի բաքավորների՝ Կարկաթիոկերտ, ինչպես նաև Արշամաշատ նստավայրերը:

Ըստ լուկուլլոսյան այս ռազմերթի՝ հասկանալի կդառնա, որ Սեքստիլիոսը կարող էր հանդիպած լինել «արաբների զորամասին» և կասեցնել դրա առաջխաղացումը, ընդունելով, որ այս արաբները միայն Միգդոնիայի բնակիչներն էին: Այս տարածաշրջանի տեղական անվանումն Արշակունիների ժամանակաշրջանում և ավելի ուշ Արվաստան էր, ինչը նշանակում

---

[1] **Strabonis**, XVI, 1, 23.

[2] [**Փավստոս Բուզանդ**, V, 7, հմմտ. **Н. Адонц**,] Армения в эпоху Юстиниана. [Политическое состояние на основе нахарарского строя, СПб., 1908], с. 31 и др.:

[3] **E. Sachau**, Ueber die Lage von Tigranocerta, Abhandl. der kgl. Akademie der Wissensch. zu Berlin, 1880. Հարկ է հրաժարվել Ամիդի, Մայաֆարկինի, Սղերդի հետ Տիգրանակերտի նույնացումից: **Th. Mommsen**, **H. Kiepert**, Hermes IX, 1874, S. 164; **C. F. Lehmann-Haupt**, Armenien einst und jetzt, I, Berlin und Leipzig, 1910; II, Berlin und Leipzig, 1926.

է՝ արաբների երկիր: Արաբների զորամասի անվան ներքո հարկ է, այսպիսով, ընկալել բնիկներին, որոնց վրա հարձակվել են ներխուժողները:

Բարդություն կծառանա Մուրենայի պարագան բացատրելու հարցում: Եթե Տիգրանը նահանջել էր դեպի Տավրոս, այն է՝ անցել էր Տիգրիսը և ճանապարհ ընկել դեպի Բիբլիս, ի՞նչպես կարող էր Մուրենան ի կատար ածել իր առաքելությունը, որը հանգում էր ճողոպրող թագավորին հետապնդելուն, զառիվայր հովտում, առանց մերձենալու Տավրոսին, որը և կարող էր նրան հարկադրած լինել անցնելու Տիգրիսը, ինչի մասին, սակայն, հիշատակություն չկա:

Հակառակ պարագան ավելի նվազ համոզիչ է: Եթե Լուկուլլոսը, ըստ պատմական վկայության՝ անցել էր Տիգրիսը և այդտեղ պարտության մատնել Միթրոքարզանեսին, նա հարկն ունեցած կլիներ, այդուհանդերձ, վերստին անցնելու աջ ափը՝ կարողանալու համար հասնել Տիգրանակերտ: Սակայն, մեր պատմիչը, որքան էլ մանրակրկիտ է այն ամենի հարցում, ինչ վերաբերում է իր հերոսին, չի խոսում երկրորդ անցումի մասին:

Այս բարդությունները չեն կարող ամենևին խորացնել մեր վստահությունը Լուկուլլոսի արշավանքի պատմության նկատմամբ:

Մեզ պատմում են, որ Տիգրանն իր նահանջի ընթացքում կոչով դիմել է իր ստորականերին, հավաքագրել բոլոր զորքերը, որոնց միանալու են եկել «կորդվացիների, մարաստանցիների, ադիաբենցիների զորքերն իրենց թագավորների հետ մեկտեղ, նույնիսկ նրա մոտ են ժամանել՝ Բաբելոնի ծովից արաբների բազմությունը, Կասպից ծովից՝ մեծ թվով աղվաններ ու իբերներ և Արաքսի ափերից՝ բարբարոսների ամբոխը (23)՝ առանց թագավորի»:

Մեզ պատրաստվում էին համոզել, որ Տիգրանի տիրապետությունն անհանդուրժելի էր և բոլոր հպատակեցված ժողովուրդները ցանկանում էին այն թոթափել, այժմ հերթը հասել է պնդելուն, որ Տիգրանի կոչին պատասխանել են ոչ միայն նրա ստորակաները, այլ նույնիսկ Բաբելոնի ծովեզերքում բնակվող արաբները:

Տիգրանը հավաքագրել է, այսպիսով, մի ահռելի բանակ, որն ընդգրկում էր 20.000 աղեղնավոր և պարսավոր, 55.000 հեծյալ, որոնցից 17.000-ը՝ զրահապատ, 15.000 [ծանրազեն] հետևակ և վերջապես 35.000 սակրավոր, կամուրջ պատրաստող, անտառահատ և անհրաժեշտ այլ բանվորներ: 260 հազարանոց այս ահռելի բանակի դեմ խեղճ Լուկուլլոսը կարող էր դուրս բերել միայն 24 կոհորտա, բոլորը միասին՝ *առավելագույնը* 10.000 հետևակային, 3000 հեծյալ և *շուրջ* 1000 պարսավոր և աղեղնավոր: 6000 մարդուց բաղկացած մի զորամաս գտնվում էր Մուրենայի տրամադրության

ներքո: Արդյո՞ք հատկանշական չէ, որ հռոմեացի զորավարն ավելի լավ ճանաչում էր թշնամու, քան իր անձնակազմերը և սպառազինությունը, ինչպես դա տեսանելի է դառնում ընդգծված բառերի միջոցով:

Երբ Լուկուլլոսը թողել է Պոնտոսը, իր տրամադրության ներքո ունեցել է 12.000 հետևակային և 3000-ից պակաս հեծյալ, եթե հաշվի չառնենք 6000 մարտիկների, որոնց թողել էր Սոռնատիոսի հրամանատարության ներքո՝ Պոնտոսը հսկելու համար[1]: Այժմ նա խորհում է, որ ունի 24 կոհորտա կամ 12.000-անոց հետևակ (և ոչ թե *առավելագույնը* 10.000), 3000 հեծյալ, 1000 պարսավոր՝ բացի Սուրենայի 6000 զինվորից: Ո՞րտեղից էր նա ձեռք բերել այս լրացուցիչ 6000 մարդուն: Այսպիսով, ճիշտ չէ, որ այն պահին, երբ նա սկսել է արշավանքն ընդդեմ Տիգրանի՝ ունեցել է 15.000 մարդ, որոնցից բացի նաև 1000 պարսավոր և Սուրենայի մոտ գտնվող 6000 մարդուց բաղկացած զորամասը, ամենը միասին՝ 22.000: Ճշմարտությունը չսիրողների հիշողությունը միշտ կարճ է:

[Լուկուլլոսը և պատմիչները] հորինել են նաև դատարկաբանություններ՝ իրենց իմացության պակասը դրանցով քողարկելու համար, այնպես, որպեսզի կարողանան միտումնավոր դիրքերից աղավաղել տվյալները և իրադարձությունները: Չավեշտասաքերը, որոնք զուգորդում են [դեպքերին], պատիվ չեն բերում իրականության և չափի զգացողությունից զուրկ դրանք հորինողներին:

Տիգրանը վճռել էր մարտնչել: Միհրդատը նրան տարհամոզում էր [ռազմական] գործողություններին ձեռնամուխ լինելու կապակցությամբ և առաջարկում ջանքեր գործադրել հռոմեացիների պարենային պաշարների ճանապարհները փակելու ուղղությամբ: Բոլոր կողմերից կուտակված իր զորքերին ի տես՝ Տիգրանն ի հայտ էր բերում իր անհամբերությունը: Միհրդատի զորավար [Տաքսիլեսը] խիզախում էր վճարել իր կյանքի գնով՝ արքայի բուռն ձգտումին հակադրվելու համար: Թվում էր, թե նախանձից դրդված՝ Միհրդատը ցանկանում էր վանել մեծ հաջողության հնարավորությունը: Տիգրանը չի ցանկանում սպասել նրան այն մտավախությամբ, որ վերջինս կկիսի հաղթողի իր փառքը: Տիգրանը բանակով առաջ է ընթանում՝ «իր մերձավորներին ու ընկերներին դժգոհություն հայտնելով առ այն, որ ափսոսում է, որ ինքը պետք է չափվի միայն Լուկուլլոսի և ոչ թե Հռոմի բոլոր զորավարների հետ միանգամից»[2]:

---

[1] [**Plutarchi**, Lucullus, 24].

[2] [Նույնը, 26]:

Տիգրանն անցել է Տավրոսը և տեսել իր մայրաքաղաքի առջև բանակած հռոմեացիներին: Քաղաքի բնակիչները պատրաստվում էին ծափահարել՝ պաշարողներին սպառնացող նրա կեցվածքի առնչությամբ՝ պարիսպների բարձունքից վերջիններիս մատնացույց անելով հայ զորայիններին: Լուկուլլոսն առաջ է շարժվել Տիգրանին դեմ հանդիման և ճամբարել մի հարթավայրում՝ գետի երկայնքով: Նրա բանակը Տիգրանին թվացել է խիստ փոքրաքանակ և ծիծաղելու առիթ է տվել արքային հանձնյանալու ցանկություն ունեցողներին: Ոմանք ծաղրում էին, այլք վիճակ էին նետում դիակները բաժանելու համար: Թագավորներից և զորավարներից յուրաքանչյուրը նրանից խնդրում էր ամբողջ գործը միայնակ իրականացնելու հանձնարարություն, այն դեպքում, երբ նա ինքը՝ Տիգրանը կմնար դրա հանդիսատեսը: Անձամբ Տիգրանը, ցանկանալով հաճոյանալ՝ ասել է այս նշանավոր բառերը. «Եթե հռոմեացիները եկել են որպես դեսպանություն՝ շատ են, իսկ որպես զորք՝ քիչ են»[1]:

Տիգրանն իր օրն անց էր կացնում կատակներով: Նա բանակել էր գետի *արևելյան* ափին: Լուկուլլոսն ուղղել է իր բանակը դեպի այն տեղանքը, որտեղ գետը պտույտ էր կատարում դեպի արևմուտք և դառնում էր շատ ավելի ծանծաղուտ: Տիգրանին թվում է, թե նրա հայրենեպ ռազմերթը նահանջ է: Դիմելով Տաքսիլեսին, նա ծիծաղելով ասել է. «Ահա հռոմեացիների անպարտելի հետևակը: Չե՞ս ցանկանում դու դրան փախուստի մատնել»: Այդ պահին Լուկուլլոսը շրջվել է դեպի Տիգրանի ճամբարը՝ գետն անցնելու համար: Խիստ զարմացած Տիգրանը երկու կամ երեք անգամ բացականչել է. «Այդ մարդիկ մե՞զ վրա են գալիս»: Նա բանակը դասավորել է մարտակարգով՝ իր վրա է վերցրել կենտրոնը, ձախ թևը հանձնել Ադիաբենի, իսկ աջ թևը՝ մարերի թագավորին:

Ճակատամարտը բռնկվել է 68 [69] թ. հոկտեմբերի 6-ին: Տիգրանի ճամբարը գտնվում էր մի բլրի ստորոտում: Լուկուլլոսը երկու կոհորտայով շտապել է գրավել բլուրը: Հասնելով բլրի գագաթին, նա ամբողջ ձայնով. բացականչել է. «Հաղթանակը մերն է»: Այս ասելուց հետո, հարձակվել է թշնամու ճամբարի վրա: Տիգրանի բանակը, որը չէր սպասում հռոմեացիներին, բարձր աղաղակներով դիմել է ամենաամոթալի փախուստի, այնպես որ Լուկուլլոսը համարյա առանց վիրավորների և առանց արյան մեկ կաթիլ թափելու, փախուստի է մատնել Տիգրանի բազմաբյուր բանակին: Թշնամու կորուստը հասնում էր ավելի քան 100.000 մարդու, այն դեպքում, երբ Լուկուլլոսն ունեցել է հարյուր վիրավոր և հինգ սպանված:

[1] [Plutarchi, Lucullus, 27].

Հռոմեացի զորավարն այսպես է հավերժացրել իր անունը՝ երկու քաղավորի՝ «ամենանշանավորներին և ամենահզորներին», հաղթել է երկու հակադիր միջոցներով՝ սրընթացությամբ և դանդաղաշարժությամբ:

Այս հաղորդման հեղինակն անտարակույս ստեր հորինող է: Նա լավ գիտի, որ ճշմարտությունը թաքցնելու լավագույն միջոցը՝ անսահմանելի երևակայության միջոցով հնարված ծիծաղաշարժ մանրամասների մեջ այն կորստի մատնելն է:

Իրավացիորեն հարց է ծագում, թե ի՞նչ միջոցով կարող էր հակառակորդը տեղեկացված լինել այն մասին, թե ի՞նչ էր կատարվում Տիգրանի ճամբարում, նրա մերձավորների շրջանում: Եթե ենթադրենք, որ Տիգրանի կարծեցյալ կատակները, նրա երգիծական բառերն իրոք արտասանվել են, ի՞նչպես կարող էին դրանք մատչելի լինել հռոմեացիներին:

Հնարելը միշտ ավելի դյուրին է, քան իրականությունը վերարտադրելը: Գետը, որի ափին բռնկվել է ճակատամարտը, նույնիսկ իր անվամբ չի կոչվել: Արդյո՞ք դա Տիգրիսն է: Այնուամենայնիվ, մեզ ասում են, որ հենց Տիգրանն անցել է Տավրոսը՝ տեսել է հռոմեացիների ճամբարը Տիգրանակերտի առջև: Այսպիսով, հարկ էր, որ նա անցներ Տիգրիսը և իջներ մինչև մայրաքաղաք, որպեսզի կարողանար տեսնել հռոմեացիներին՝ քաղաքի առջև: Բայց այդ ժամանակ Լուկուլլոսը կարիքը չէր ունենա Տիգրանի բանակի վրա հարձակվելու համար Տիգրիսն անցնելու: Հետևաբար, դեպի արևմուտք գետի թեքվելու և Լուկուլլոսի զորաշարժի մասին մանրամասները բացարձակապես մտացածին են և նպատակաուղղված երգիծական արտահայտությունը հիմնազուրկ անելուն, որը ցանկացել են վերագրել Տիգրանին: Նույնիսկ Տիգրանի զրույցների շուրջ տեղեկություններ ունենալուն հավակնող հեղինակը պետք է ավելի լավ կողմնորոշվեր այն տեղանքի հարցում, ուր տեղի է ունեցել այն ճակատամարտը, որը խանդավառությամբ տոգորված նրա պատմության նյութն է: Մինչդեռ, գլուխ են կոտրում հասկանալու, թե որտեղ է տեղի ունեցել ճակատամարտը՝ Տիգրանակերտ քաղաքի առջև, թե Տիգրիսի ափին:

Զորավարը, որն իր հաղորդագրություններում այդքան բծախնդիր է հակառակորդի անձնակազմերի նկատմամբ, սակայն, ինչ վերաբերում է իր ուժերին՝ խիստ անորոշ է, որոնք նա բնորոշում է «առավելագույնը», «շուրջ» բառերով, չի կարող արժանի լինել մեծ հավատի: Ոչ մեկը չի ցանկանում խոստովանել, որ Լուկուլլոսի արշավանքի պատմությունը, որը հիմնվում է անձամբ նրա ռազմական հաղորդագրությունների վրա, միայն

դատարկ սնապարծություն է, այլ ոչ թե իրական ճակատամարտի արժանահավատ նկարագրություն[1]:

Լուկուլլոսի պատմության մեջ ցորենը որոշի կույտից զանազանելու համար մեծ պայծառատեսություն ունենալու հարկը չկա: Իրադարձությունները ներկայանում են հետևյալ կերպ: 69 թ. ամռան սկզբին Լուկուլլոսը Տոմիսայի կամրջով անցել է Եփրատը: Եփրատը, թեպետ վարարել էր գարնանային անձրևների հետևանքով, այդուհանդերձ, Լուկուլլոսին ծանծաղուտով անցնելու հնարավորություն է ընձեռել: Դա պարզապես նշանակում է, որ տարվա եղանակը փոխվել էր և որ գարունը տեղը հենց նոր զիջել էր ամռանը, երբ ջրերի մակարդակը զգալիորեն իջել էր:

Նա մուտք է գործել Ծոփք և գահընկեց արել դրա կառավարիչ Միթրոբարզանեսին (Միթրոբուզանեսի փոխարեն): Այդտեղ նա իմացել է իր մազադնի դաշնակցի՝ Կորդուքի թագավոր Զարբիենոսի մահապատժի մասին: Վերջինիս դավաճանությանը տեղեկացված Տիգրանը՝ թագավորին պատժել էր՝ իր ամբողջ ընտանիքի հետ միասին դատապարտելով մահվան:

Այս լուրը փոխել է Լուկուլլոսի նախնական ծրագիրը, որը Տիգրանի դեմ ուղղված իր գործողությունների ընթացքում հույս էր տածում հենվել Կորդուքի վրա: Այդ ժամանակ նա ճանապարհ է ընկել դեպի մայրաքաղաք Տիգրանակերտ, որն Արվաստանում էր, «արաբների երկրում» (Սեքստի-լիոսը հարձակվել էր Տիգրանի մոտ գնացող արաբների վրա և նրանց կանգնեցրել)՝ առանց անցնելու Տիգրիսը: Քաղաքը, նրա կարծիքով, այնպիսին էր, որ կարելի էր առանց բարդության դրա վրա գրոհել: Այն գտնվում էր բուն Հայաստանի սահմաններից դուրս և քաղաքի բնակիչներն այլևայլ ծագում ունեցող ու տարբեր ցեղերի պատկանող մարդիկ էին, որոնց Տիգրանն իբր կտրել էր իրենց հայրենիքից և տեղավորել իր նոր հիմնադրված քաղաքում: Նույն տարվա հոկտեմբերի 6-ին մենք նրան տեսնում ենք Տիգրանակերտի մերձակայքում բանակած: Ամենևին հարկ չկա պարծենալ սրընթացությամբ, ինչպես այդ հավաստում է Լուկուլլոսի համհատար կենսագիրը:

Տիգրանի պետության հարավային սահմանները վստահված էին հավատարիմ մարդկանց: Տիգրանակերտը գտնվում էր Մանկայոսի հրամանատարության ներքո, Մծբինը՝ թագավորի եղբայր Գուրասի, իսկ ամբողջ Աստրիքը տրվել էր փոխարքա Բագադատեսին [Բագարատ] (և ո՛չ Մազադատեսին): Վերջինս, հավանաբար, Բագրատունիների նշանավոր ըն-

[1] [Հղումն անընթեռնելի է: – Ծ. թ.]:

տանիքի նախահայրն է: Մանկայոսը, սրբագրված լինելով «Մամանկայոս» ձևով, կարող էր, հավանաբար, լինել նշանավոր Մամիկոնյանների նախահայրը: Հարկ չկա վստահությամբ վերաբերվելու այն տեղեկությանը, ըստ որի Լուկուլլոսի ներխուժման պահին Տիգրանը գտնվում էր Տիգրանակերտում: Ապպիոսի դեսպանությունը ներկայացել է Տիգրանին Անտիոքում 70 թվականին: 69 թ. ամռանը, Լուկուլլոսի հայտնվելու ժամանակ, Տիգրանը, ամենայն հավանականությամբ, գտնվում էր իր ամառային նստավայրում՝ Արտաշատում, ուր կարող էր գնացած լինել Փյունիկիայում գործերը կարգավորելուց հետո:

Արտաշատում է նաև, որ նա կարող էր հանդիպում ունեցած լինել Միհրդատի հետ, որը սպասում էր Տիգրանին «ճահճոտ և առողջության համար վնասակար վայրում»:

Այս վայրը պետք է լինի Կարին քաղաքը, ապագա Թեոդոսուպոլիսը. դա Պոնտոսին՝ Միհրդատի թագավորությանը մոտ գտնվող վայր է, որի շրջակայքում ճահիճներ կան:

Լուկուլլոսի ներխուժման լուրն ստանալուն պես, Հայոց թագավորը թողել է Արտաշատը և շարժվել հակառակորդին ընդառաջ: Բիթլիսի կիրճով Տավրոսն անցնելուց հետո, Տիգրանը պետք է ուղղություն վերցներ դեպի Ամիդ քաղաքը՝ այդ ժամանակ մինչև Տիգրանակերտ քաղաքն առաջացած թշնամու վրա թիկունքից հարձակվելու և նրան՝ պաշարումը վերացնել ստիպելու համար:

Տիգրանի ժամանումը բարդացրել է Լուկուլլոսի վիճակը: Նա ռազմական խորհուրդ է հրավիրում: Ոմանք առաջարկել են վերացնել պաշարումը և գնալ դեպի Տիգրանը: Այլք այդչափ հակառակորդներ հետևում թողնելը համարել են վտանգավոր և համառորեն պնդել, որ պաշարումը շարունակվի:

Հռոմեացի զորավարը հայտարարել է, թե երկու կարծիքն առանձինառանձին վերցրած վատն են, իսկ միաժամանակ՝ լավ:

Սուրենային հանձնարարելով շարունակել պաշարումը 6000 հետևակայինի հետ միասին՝ Լուկուլլոսը վերցրել է բանակի մյուս մասը և շարժվել Տիգրանի դեմ: Նա ճամբարել է «մի ընդարձակ հարթավայրում՝ գետի երկայնքով»: Տիգրանը ճամբարել էր «գետի արևելյան ափին»:

Այս իրադարձությունների մասին մեզ պատմող չորս պատմիչներից և ոչ մեկը[1] չի հիշատակում այս գետի անունը, ինչը վկայում է, որ նրանց պատ-

---

[1] Պլուտարքոս, Ապպիանոս, Մեմնոն և Փրոնտինոս:

մությունը սկիզբ է առնում մեկ և միևնույն սկզբնաղբյուրից՝ Լուկուլլոսի ստահող հաղորդագրությունից:

Արդի [հետազոտողները] ենթադրել են, որ ճակատամարտը սանձազերծվել է Տիգրանակերտի առջև, քանզի Պլուտարքոսը հիշատակում է, որ պաշարվածները կարող էին ողջունած լինել Տիգրանի ժամանումը և երկու ճամբարները բաժանող գետը Նիկեփորիոնն էր: Դրա հետ չի կարելի համաձայնել: Այս պարագայից կարիքը չկար խորհրդակցելու՝ վճռելու համար այն հարցը, թե արդյո՞ք հարկ էր վերացնել պաշարումը:

Ճակատամարտն, անտարակույս, տեղի է ունեցել Տիգրիսի ափերին, սակայն, թե ի՞նչ վայրում, որոշակիություն չկա: Մենք տեղեկացված ենք, որ հայկական ճամբարը գտնվում էր գետի արևելյան ափին: Տիգրիսը հոսում է հյուսիսից հարավ: Տիգրիսի ուղղությունն այսպիսին է՝ դրա ակունքներից մինչև Ամիդ և այնուհետև, սկսած Բոհտանի հետ միախառնումից: Այսպիսով, ճակատամարտի վայրի համար մենք պետք է ընտրություն կատարենք Տիգրիսի՝ Ամիդի մոտ գտնվող ափի կամ երկու Տիգրիսների միացման ափի միջև: [Թ.] Մոմզենը և նրա հետ մեկտեղ Թ. Ռեյնաքը հանգել են վերջին ենթադրությանը: Մենք գերադասում ենք առաջին ենթադրությունը և կարծում, որ ճակատամարտը տրվել է Ամիդի մոտ: Եթե Լուկուլլոսը վճռել է հեռանալ Տիգրանակերտից, դրա գլխավոր պատճառը՝ Տիգրանի կողմից իր նահանջի ճանապարհը հատելու մտավախությունն էր: Նրա պարտության պարագայից, հռոմեական բանակը պետք է նահանջեր Ամիդ-Մելիտենե ճանապարհով: Հարկ էր մտածել այդ ճանապարհի անվտանգության մասին: Եթե Տիգրանը գար Բոհտանի կողմից, ապա դրանով հռոմեացիների կացության համար որևէ սպառնալիք չէր կարող առաջանալ, և Լուկուլլոսը կարող էր մնալ այնտեղ, որտեղ գտնվում էր: Եթե նա անհրաժեշտ է համարել նահանջել Տիգրանակերտից, ապա այդ արվել է խանգարելու համար Տիգրանին հատելու Ամիդ-Մելիտենե ճանապարհը: Տիգրանն ակնհայտորեն հետևել է Բիթլիս-Մարտիրոպոլիս ուղղությանը և ճամբարել Տիգրիսի արևելյան ափին՝ Ամիդի արվարձաններում:

Ճակատամարտի նկարագրությունը հեռու է հստակ լինելուց: Այն նկարագրել են Պլուտարքոսը, Ապպիանոսը[1], Մեմնոն [Հերակլեացին][2] և Փրոնտինոսը[3], սակայն, նրանց տեղեկությունները վերջին հաշվով հիմնված են Լուկուլլոսի հաղորդագրությունների վրա: Վերջինս կանխամտածված չա-

---

[1] **Appiani Mithridatica**, 8.

[2] **Memnon**, 57.

[3] **Frontini II**, 2, 4.

փազանցել է Տիգրանի ուժերը, պնդելով, որ հայոց թագավորը Լուկուլլոսի դեմ դուրս էր բերել 250.000 մարդուց բաղկացած մի բանակ, և որ ճակատամարտի դաշտում նա թողել էր 100.000 մ[արդու]. Մեմնոն [Հերակլեացու] մոտ՝ 250.000 հետևակ և 50.000 հեծյալ, Եվտրոպիոսի մոտ՝ 100.000 հետևակ և 7500 զրահավոր զինվոր: Ըստ Տիտոս Լիվիոսի՝ մեկ հռոմեացին հարկ էր, որ գործ ունենար քսան թշնամու հետ:

Բոլոր այս թվերը երևակայական են, ինչպես նաև ճակատամարտի մանրամասն նկարագրությունն արժանի չէ որևէ վստահության:

Հռոմեացիները Հայաստանի և հայերի մասին տեղեկություններ գրեթե չեն ունեցել: Լուկուլլոսը չերկյուղելով մերկացումից, կարծել է, թե կարող է բավարարել իր սնապարծությունը՝ ազատություն տալով իր անկաշկանդ երևակայությանը:

Ահա այն, ինչ պատմում են: Լուկուլլոսն անցել է գետը և առաջինը շարժվել թշնամու դեմ: Հայկական զրահավոր հեծելազորը, որի հետ մեծ հույսեր էին կապվել, գտնվում էր մի բլրի ստորոտում: Լուկուլլոսը կարգադրել է թրակացի և գալատացի իր հեծյալներին գնալ և դրան հարվածել թևից ու «հետ նետել հայկական հեծելազորի նիզակակիրներին՝ իրենց սրերի միջոցով»: Անձամբ ինքը վերցրել է երկու կոհորտա՝ երկու հազար անձանց, և շտապել գրավելու բլուրը: Հասնելով բլրի գագաթին, նա գոռացել է ամբողջ ձայնով. «Հաղթանակը մերն է»:

Այս կանխարղական բառերն արտասանելուց հետո, հռոմեացի զորավարը հարձակվել է զրահավոր հեծելազորի վրա: Չմոռանանք, որ դրա թվաքանակը ենթադրաբար հասնում էր 50.000-ի: Նա յուրայիններին կարգադրել է հարվածել հակառակորդի ազդրերին՝ մարմնի միակ մասերին, որոնք զրահով պաշտպանված չէին: Սակայն, ո՞ւմ համար էր այս խորհուրդը: Դրանից օգտվելու կարիքը չի եղել, քանզի հակառակորդները բարձր աղաղակներով փախել են «ամենաամոթալի ձևով», մխրճվել [իրենց իսկ] հետևակի մեջ և ամբողջ զորքը ճողոպրել է. «Այսպիսով, մինչև մարտի բռնվելը, հռոմեացիներն առանց վիրավորների, առանց արյան մեկ կաթիլ հեղելու հսկայական բանակը պարտության են մատնել»:

Հնարավո՞ր է արդյոք, որ մի բլրի, «որի թեքությունը հասել է ավելի քան չորս ասպարեզի», այն է՝ յոթ հարյուր քսան մետրի, ստորոտում ճամբարած՝ 250.000 մարդուց բաղկացած հսկայական բանակը չնկատեր, որ թշնամիները ջանում էին գրավել բլուրը: Արդյո՞ք հավատ է ներշնչում այն, որ 2000 մարդուց բաղկացած զորամասը կարողանար փախուստի մատնել նման ստվար բանակին, որի կազմում հաշվվում էր 50.000 զրահավոր զինվոր:

Որքան մենք դյուրահավատ լինենք, պետք չէ վստահությամբ վերաբերվել նման բնույթի դատարկաբանություններին: Երկուսից մեկը՝ կամ Տիգրանի բանակն այդքան ստվար չի եղել, որքան այն ներկայացնում են, կամ պատմությունն ամբողջությամբ խեղաթյուրված է: Մենք կարծում ենք, որ թե՛ մեկը և թե՛ մյուսը սխալ են:

Պլուտարքոսը բաքցրել է մեծ կարևորություն ունեցող մի փաստ: Լուկուլլոսի հետ բախվելուց առաջ, Տիգրանը Տիգրանակերտ էր ուղարկել 6000 մարդուց բաղկացած մի զորամաս՝ հռոմեացիների կողմից քաղաքի պաշարման ժամանակ, որին հաջողվել է ճեղքել շրջափակումը, նետաձիգների բազմությամբ հետ մղելով պաշարողներին մուտք գործել քաղաք և Տիգրան արքայի կանանց ու գանձերը վերցնելուց հետո, հաջորդ օրն այնտեղից դուրս գալ, և ճեղքելով հռոմեական ուժերի գիծը՝ ժամանել Տիգրանի մոտ[1]:

Այս դիպվածը տեղիք է տալիս որոշ մտորումների: Նախ այն վկայում է, որ Լուկուլլոսի ներխուժման պահին Տիգրանը Տիգրանակերտում չէր գտնվում, ինչպես հավաստում է Պլուտարքոսը՝ ակնարկելով, որ Տիգրանը լքել է մայրաքաղաքը: Հակառակ դեպքում, նա իր հետ տարած կլիներ իր կանանց և գանձերը: Այնուհետև, եթե Տիգրանն իր տրամադրության ներքո ունենար նույնիսկ 80.000 զինվորից բաղկացած մի բանակ, որը Մեմնոնի հաղորդած ամենանվազեցված թվաքանակն է, նման վտանգավոր և կարևոր առաքելության համար նա կարող էր ուղարկած լինել ավելի քան 6000 մարդ:

Վերջապես, եթե 6000 մարդուց բաղկացած արագաշարժ զորամասը հասու է եղել նման խիզախ արարքի իրականացման համար, ինչո՞ւ պետք է միևնույն բանակի գլխավոր ուժերը թիկունքով շրջված լինեին դեպի հակառակորդը, առանց նույնիսկ համարձակվելու ուժերը չափել նրա հետ: Սա, իրոք որ, առեղծված է, որի լուծումը հարկ է փնտրել Լուկուլլոսի և նրա համակիր պատմիչների մոտ:

Միայն Տիգրանի բազավորական խույրի հետ կապված պատմությունը բավական է վարկաբեկելու համար այն ամենն, ինչ պատմում են Լուկուլլոսի և Տիգրանի մասին: Տիգրանի կարծեցյալ խույրը Լուկուլլոսի ռազմավարի մեջ ընդգրկելու համար հնարել են բավականին տափակ և խիստ պարզամիտ մի պատմություն: Տիգրանը, ի սկզբանե, պետք է, որ յուրայինների հետ փախած լիներ ճակատամարտի դաշտից և հանած լիներ խույրն իր գլխից ու արտասվելով այն հանձնած լիներ իր որդուն՝ կարգադրելով փրկվել՝ ինչպես կարող էր: Երիտասարդը չհամարձակվելով

[1] Memnon, 56; Appiani, 85.

գլխին դնել խույրը, պետք է, որ այն ի պահ տված լիներ իր ծառային: Ճակատագրի կամոք վերջինս գերի է ընկել: Այս կերպ, Լուկուլլոսը դարձել է խույրի սեփականատերը[1]:

Ցանկանո՞ւմ եք դուք ողբերգական տեսարան: Ահա այն: Միհրդատը չէր աճապարում ժամանել՝ ճակատամարտին մասնակցելու համար, ենթադրելով, որ Լուկուլլոսը պատրաստվում է շարժվել իր համար սովորական դանդաղկոտությամբ: Երբ նա տեղեկացել է ջախջախմանը՝ սկսել է փնտրել Տիգրանին, նրան գտել է բոլորի կողմից լքված, խղճալի վիճակում: Միհրդատն այդ ժամանակ իջել է ձիուց, արտասվել նրա հետ միասին ընդհանուր դժբախտության առիթով, նրան է տվել թագավորական շքախումբը և հույս ներշնչել ապագայի համար:

Ո՞րտեղից են սկիզբ առնում այս զայրույթը, անողոքությունը, մոլեգնությունը, որոնք կյանքի են կոչում Տիգրանին վերաբերող տափակ զրույցները: Եթե Լուկուլլոսը հաղթել է հայոց թագավորին, նա, ինչպես և բոլոր հաղթողները, կարիք չէր կարող ունենալ իր պարտված հակառակորդի նկատմամբ այդպիսի չարությամբ լցվելու:

Կան որոշ բաներ, որոնք վրիպում են մեր հասկացողությունից: Այսպես լեղիանում են չարամաղձությունից, եթե մարդու բերանը գելարանակով է փակված: Արդյո՞ք Տիգրանը հռոմեացի զորավարին պատճառել էր որոշ անախորժություններ:

Մեզ թվում է, որ Տիգրանի [զինված] ուժերի չափազանցությունը հարկ է ընկալել ավելի շուտ հակառակ իմաստով, այն է՝ Լուկուլլոսի հետ ռազմական ընդհարման պահին Տիգրանը չի ունցել մեծ թվով [զինված] ուժեր: Իր հաջողությունը շահավետ լույսի ներքո ներկայացնելու համար, Լուկուլլոսը, հավանաբար, չափազանցրել է այն զորքերի թվաքանակը, որոնց հետ վիճակված էր մարտնչել:

Արևելքի կայսրությունները չեն ունեցել [մշտական գործող] կանոնավոր բանակ, քանի որ զորքերը միշտ գտնվել են մարտական վիճակում: Պարսկաստանի թագավորներն իրենց տրամադրության ներքո ունեին միայն մեկ զորամաս, որը կոչվում էր «անմահ» և բաղկացած էր պահակազորից և այն միակ ջոկատից, որը միշտ պատրաստ էր նրանց ծառայել: Այս զորամասի հրամանատարը կոչվում էր hazarapati՝ հազարապետ կամ խիլիարքոս: Աքեմենյանները, Պարթևները, Սասանյանները, ինչպես նաև հայ Արշակունիները, ունեին հազարապետի պաշտոն: Անմահների զորամասը հա-

[1] Plutarchi, Lucullus, 28.

յերեն կոչվում էր «մայրական զունդը», ինչն, անկասկած, փոխառություն է պարթևներից:

Տիգրանը թողել է Արտաշատը՝ 10.000-ից բաղկացած իր պահակազորի ուղեկցությամբ: Եթե մարերի և ադիաբենցիների բազավորները եկել էին նրա հետ վերամիավորվելու, ինչպես հավաստիացնում է Պլուտարքոսը, ապա նրանց պահակազորը չէր կարող գերազանցել 10.000-ը: Տիգրանի պահակազորի հետ մեկտեղ՝ [հայերը] կարող էին ունեցած լինել 20.000 զինվոր: Կարելի է հավելել նաև արքունիքին կցված հայ որոշ իշխանների ռազմական ջոկատները: Լուկուլլոսին վիճակված էր դեմ հանդիման ելնելու մի բանակի, որը բյուրեր բացարձակապես չէր ընդգրկում: Իրականության զգացողություն ունեցող Մեմնոնն անհրաժեշտ է համարել Լուկուլլոսի հաղորդած 250.000-ի հասնող անհավանական թվաքանակը նվազեցնել 80.000-ի, այն է՝ մեկ երրորդով: Միևնույն պատճառով կարելի է նվազեցնել նաև Մեմնոնի հաղորդած թվաքանակը:

6000 մարդուց բաղկացած մի մասն անջատվել է հատուկ առաքելության համար: Տիգրանի բանակը չէր կարող շատ ավելի բազմաքանակ լինել, քան իր հակառակորդի բանակը (24):

Թվում է, թե Լուկուլլոսը Տիգրանի վրա հարձակվել է անսպասելիորեն և առավելություն է ձեռք բերել, հավանաբար, հաջողակ մարտավարության շնորհիվ: Նրա հաղթանակն, այդուհանդերձ, ջախջախիչ չի եղել[1]: Տիգրանի նահանջը հուսակտուր փախուստի բնույթ չէր կրում, ինչպես հավաստում է անձամբ ինքը [Լուկուլլոսը] կամ նրա պատմիչը: Եթե այն այդպիսին լիներ, դժվարությամբ է ըմբռնելի, թե ինչո՞ւ այդ ժամանակ հաղթողը փախուստի մատնված բանակը չի օգտագործել առավել մոտ տարածությունից՝ Հայաստան մուտք գործելու և մեկ հարվածով նրանց աղետն ավարտին հասցնելու համար: Ինչը կարող է ավելի դյուրին լինել, քան առանց փորձության ենթարկվելու հետապնդելն այն մարդկանց, «որոնք փախչում էին սարսափով և երկյուղով համակված»: Այդ դեպքում նա կարող էր առավելություն ձեռք բերած լինել արընթացության շնորհիվ, որով զուր հպարտանում էր՝ «ամենանշանավոր և ամենահզոր թագավոր Տիգրանին» հաղթելու համար:

Պարտվածի հետքերով գնալու փոխարեն Լուկուլլոսը թույլատրել է նրան հանգիստ նահանջել, վերադառնալ և նախապատրաստություններ տեսնել հաղթողին վտարելու համար: Լուկուլլոսը գերադասել է վերադառնալ Տիգրանակերտ: Եթե հարկ լինի դատել զորավարի մասին՝ ըստ

[1] Տիտոս Լիվիոսը, Օրոզիոսը և Փրոնտինոսը գտնում են, որ Միհրդատը մասնակցել է այս ճակատամարտին:

նրա արարքների, այլ ոչ թե ըստ նրա խոսքերի, պետք է մեծ վերապահությամբ վերաբերվել այն ամենին, ինչ պատմում են Տիգրանի հետ Լուկուլլոսի առաջին հանդիպման մասին, եթե ոչ լիովին անտեսել այս ամբողջ պարծենկոտությունը:

Տիգրանակերտում [վարձկան] հույն զինվորները լի էին Տիգրանին դավաճանելու վճռականությամբ: Քաղաքի կառավարիչ Մանկայոսը՝ Մամիկոնյանների նախահայրը, նրանց զինաթափել է: Սակայն, այդ նախազգուշությունը խիստ ուշացած էր: Մանկայոսը ցանկանում էր նրանց սրի քաշել, երբ հայտնի է դարձել, որ նրանց պահակազորին վստահված գոտին արդեն հանձնվել է թշնամիներին: Լուկուլլոսը մուտք է գործել Տիգրանակերտ բաց դռներով: Նա քաղաքը գրոհով գրավելու կարիքն այլևս չի ունեցել, ինչպես հավաստիացնում է Պլուտարքոսը, այն գրավվել է ի գին դավաճանության:

Լուկուլլոսը հափշտակել է այնտեղ գտնվող բազավորական գանձերը և քաղաքը հանձնել իր զինվորների կողոպուտին: Նա անձամբ հափշտակել է 8000 տաղանդ դրամով (8000×6000 = 48 միլիոն ֆր[անկ]) և, բացի դրանից, յուրաքանչյուր զինվոր ստացել է 800 դրաքմե, ինչը կազմում է գրեթե 15 միլիոն ֆր[անկ]՝ 18.000 զինվորի հաշվարկով:

Լուկուլլոսն իրենց հայրենիք է վերադարձրել հույներին և այլ բարբարոսներին, որոնց [Տիգրանը] պարտադրել էր գալ և բնակություն հաստատել իր նոր մայրաքաղաքում: Նրանց նույնիսկ մատակարարել են ճանապարհորդության ընթացքում. «Այսպիսով, մի քաղաքի ավերումը բազմաթիվ քաղաքների վերածնվելու հնարավորություն տվեց»,- նշում է Լուկուլլոսի պատմիչը և չի վարանում նրան փաղաքշել իբրև բարեգործի և հիմնադրի: Անկողմնակալ և ավելի ուղղամիտ դիտորդը կարող էր զորավարին մեղադրած լինել այս հրեշավոր ավերման և ամայացման համար:

Տիգրանը հրավիրել էր մեծ թվով դերասանների՝ [մայրաքաղաքում] իր կառուցած թատրոնի հանդիսավոր բացման համար: Լուկուլլոսը դրանից օգտվել է իր հաղթանակը նշելու համար՝ խաղերի և ներկայացումների միջոցով:

Արբեցած իր վաղանցիկ հաջողությամբ, Լուկուլլոսը երազում էր ուժերը չափել նաև պարթևների թագավորի հետ, հուսալով պարծենալ այն բանով, որ միայն մեկ ռազմարշավի ընթացքում մեկը մյուսի հետևից մարտնչել է երեք թագավորների հետ:

Արաբներից, ծոփացիներից, կորդվացիներից հետո, որոնք եկել են հայտնելու իրենց հպատակության մասին, ժամանել է մի պատվիրակություն պարթևների թագավորի կողմից, որը հռոմեացիներից հայցում էր

բարեկամություն և դաշինք: Լուկուլլոսը դրականորեն է պատասխանել՝ պարթևների մոտ պատվիրակություն ուղարկելով:

Սակայն, պարզվել է, որ պարթևների թագավորը միաժամանակ Տիգրանից *համեստորեն* խնդրել էր Միջագետքը՝ իբրև նրա հետ դաշինքի փոխհատուցում:

Այդ ժամանակ է, որ Լուկուլլոսը վճռել է գնալ պարթևների դեմ՝ արժանանալու համար «արևի տակ երբևէ գոյություն ունեցած երեք ամենահզոր թագավորներին հաղթողի դափնիներին»:

Այդուհանդերձ, հավակնոտ զորավարին վիճակված չէր իրականացնել այդ «համեստ» ձգտումը: Զորքերը հրաժարվել են հետևել նրան: Հարստացած զինվորները ցանկանում էին միայն անվտանգություն և հանգստի պայմաններում իրենց ռազմավարը վայելելու հնարավորություն ունենալ: Լուկուլլոսի համբավը փրկելու համար չի խնայվել նույնիսկ հռոմեացի լեգեոնականների պատիվը:

Եթե հարստությունը կարող էր զինվորներին դարձնել ռազմական գործի նկատմամբ անտարբեր, ապա Լուկուլլոսը պետք է լիներ դրա առաջին զոհը: Կուտակած լինելով անհամար գանձեր՝ նա, հավանաբար, ամենաշահագրգռվածն էր հանգստի հարցում՝ կարողանալու համար տրվել հաճույքների: Ճիշտ չի լինի դրա համար զինվորներին մեղադրելը և պատասխանատվությունը նրանց վրա բարդելը: Մենք կտեսնենք, թե միևնույն զինվորներն ինչպես են համախմբվում Պոմպեոսի դրոշի ներքո:

Իրականում, պարթևների դեմ ուղղված փառամոլ ծրագիրը Լուկուլլոսին չի անհանգստացրել: Նա ջանացել է ձեռք բերել պարթևների թագավորի դաշնակցությունը և նրան ուղղել Տիգրանի դեմ: Նա մատնվել է անհաջողության և հարկադրված է եղել միայնակ վերստին ուղղություն վերցնել դեպի Տիգրանը:

Տիգրիսի ափերին ճակատամարտը տեղի է ունեցել 69 թ. հոկտեմբերի 6-ին: Լուկուլլոսը ծմեռն անց է կացրել Տիգրանակերտում՝ որտեղ նրա իրական կամ կարծեցյալ հաղթանակի առիթով կազմակերպվել են տոնակատարություններ:

68 թ. ամռան կեսին նա անցել է Տավրոսը և գնացել բանակելու Արածանի գետի ափին: Պատմիչների տեղեկություններն այս արշավանքի շուրջ նույնքան աղոտ են, որքան առաջինի: Վստահություն չկա առ այն, որ նրանք կարող էին լավ տեղեկացված լինել այն ամենի շուրջ, ինչ տեղի է ունեցել, չնայած ավելորդ մանրամասներին, որոնցով առլեցուն է նրանց պատմությունը: Տավրոսի սառցոտի արտերը դեռևս կանաչ էին՝ օդի սառնության պատճառով: Լուկուլլոսն իջել է հարթավայր, հայերի կողմից

ենթարկվել անհաջող հարձակման, անկաշկանդ կողոպտել է գյուղերը, հափշտակել Տիգրանի համար նախատեսված ցորենի պաշարները և հակառակորդին սովի մատնել:

Խոստովանելուց հետո, որ հայերը համարձակվել են հարձակվել նրա վրա, և որ նա ետ է մղել նրանց կրկնվող հարձակումները, [պատմագիրները] հավաստում են, առանց մտահոգվելու [առաջացող] հակասությունների մասին, որ Լուկուլլոսը նրանց դրդում էր մարտի, սակայն, նրան չի հաջողվել «բազմիցս պարտված» հայկական զորքերին դուրս բերել անգործությունից:

Այսպիսով, նա մեկնել է՝ ընտրելով Արտաշատի՝ Տիգրանի թագավորական ոստանի ճանապարհը, նրա հետ մարտնչելու համար: Հռոմեացի զորավարը գնում էր դեպի Արտաշատ, երբ Տիգրանը՝ իր բանակի գլուխն անցած չորս օրում եկել է և բանակել հռոմեացիների առջև: Այս անգամ ևս հակառակորդների ճամբարները բաժանված էին գետով, որն էր Արածանին: Արտաշատ հասնելու համար Լուկուլլոսին անհրաժեշտ էր անցնել այս գետը: Նրա տասներկու կոհորտաներն առաջին գծում, և այլք մեկը մյուսի հետևից անցել են Արածանին: Այնտեղ էին շարված Տիգրանի ընտիր զորքերը, բազմաքանակ հեծելազորի հետ մեկտեղ, նրա հետ էր նաև ձիավոր նետաձիգ մարերի, նիզակակիր իբերների զորքը, որին Տիգրանն ամենից շատ էր վստահում: Սակայն, այս օտար զորքը չի արդարացրել արքայի վստահությունը: Հռոմեական հեծելազորի հետ թեթև ընդհարումից հետո, մարերն ու իբերները թիկունքը շրջել են և ճողոպրել: Այդ ժամանակ, առաջ է շարժվել Տիգրանի հեծելազորը, որն ահազդու էր իր շքեղությամբ և քանակով: Արքան ղեկավարում էր իր լավագույն զինվորներին՝ սակասեններին: Լուկուլլոսը ետ է կանչել հետապնդող իր հեծյալներին և նրանց հետ շարժվել դեպի Տիգրանը: Մինչև ձեռնամարտի դիմելը, նա նրան ահաբեկել է և փախուստի մատնել:

Ավելացնում են, որ «ճակատամարտին մասնակցած երեք թագավորներից ամենախայտառակ ճողոպրողը եղել է Պոնտոսի թագավոր Միհրդատը. նա չի դիմացել հռոմեացիների մարտական աղաղակներին»:

Հաղթողին մնում էր միայն հետապնդել փախուստի մատնված բանակը, սպանել, գերեվարել և տիրանալ ավարին: Նրանք այդպես են վարվել ամբողջ գիշերվա ընթացքում:

Վերջաքանը, սակայն, եղել է նույնքան տխուր, որքան առաջին ճակատամարտի ժամանակ: Իր հաղթանակով քաջալերված Լուկուլլոսը խորհում էր ավելի առաջ ընթանալու և թշնամուն ամբողջությամբ ջախջախելու մասին: Սակայն, այս անգամ նրան խանգարել են անսպասելիորեն վրա

հասած ուժգին ցրտերը: Դա աշնանային գիշերահավասարի պահն էր: Ձիերը չէին կարողանում ջուր խմել սառցակալած գետակներից և կամ անցնել գետերը, քանի որ սառույցը հանկարծ կոտրվում էր և իր սուր ծայրով կտրում ձիերի մկանների ջլերը: Զինվորները հարկադրված էին քայլել ձյունով լեցուն արահետներով, ինչը նրանց վերջապես դրդել է ապստամբելու: Ճակատամարտից մի քանի օր անց նրանք ապստամբել են: Լուկուլլոսը զուր էր նրանց խնդրում համբերությամբ զինվել մինչև այն պահը, երբ կկարողանան ավերել Հայաստանի Կարքեդոնը՝ Արտաշատը: Նրա թախանձագին խնդրանքները մնացել են անօգուտ: Զորավարը նրանց դառնությամբ հետ է տարել, այլ ճանապարհով անցել Տավրոսն ու իջել Միգդոնիա, ուր գտնվում էր Մծբին մեծ քաղաքը, որը հույներն անվանում էին Միգդոնիայի Անտիոք:

Այս պատմության մեջ, որն, անտարակույս, ծագում է Լուկուլլոսի հաղորդագրությունից և կրում նրան բնորոշ անհամեստության կնիքը, կան կասկածելի հանգամանքներ, որոնք հնարավոր չէ թաքցնել: Երկխոսիտ թուղին ամենևին հստակ չէ: Ճակատամարտի վայրը ևս թվում է անորոշ, ինչպես նաև առաջին ճակատամարտինը: Տիգրանակերտից Արտաշատ գնալու համար հարկ էր անցնել Տավրոսը և դա այդպես է: Բայց արդյո՞ք կարիքը կար անցնելու Արածանի գետը: Եթե Տիգրանի հետ հանդիպումը կայացել է, ինչպես կարծում են արդի [հետազոտողները], Մանազկերտի մոտ, Լուկուլլոսը կարիք չէր ունենա ճակատամարտ սկսելու համար անցնել գետը: Այն ճանապարհը, որը Մուշի հարթավայրից, ուր գտնվում էր Լուկուլլոսը Տավրոսից իջնելուց հետո, ձգվում էր դեպի Արտաշատ, անցնում էր Մանազկերտ-Դիադին գծով: Դեպի Արտաշատ գնացող Լուկուլլոսը հարկն ուներ միայն հետևելու այս ուղղությանը, առանց անցնելու Արածանին: Նույնը վերաբերում է Տիգրանին: Եթե նա իջել է Արտաշատից մինչև Մանազկերտ, պետք է գտնվեր միևնույն ափին, որտեղ Լուկուլլոսն էր:

Սակայն, մեզ հաղորդում են, որ գետը բաժանում էր երկու ճամբարները: Այս պատճառով, հարկ է ընդունել, որ Լուկուլլոսն առաջ էր ընթացել մինչև Բագրեվանդի (այս[օր]՝ Ալաշկերտի) սահմանը և ճամբարել Արածանիի արևելյան բազուկի հարավային ափին, այսօրվա Ուչ-քիլիսեյի [Բագավան] մոտ:

Չորս օրում Արտաշատից եկած Տիգրանը կարող էր բանակած լինել հակադիր ափին: Նրա ճանապարհն անցնում էր Արարատի լեռնաշղթայով՝ Իգդիր-Արծափ գծով, միակը, որն Արաքսի հովիտը կապում էր Արածանիի հովտի հետ: Իհարկե, բանակի համար անհնար է չորս օրում Արտաշատից

գնալ Մանազկերտ: Այն հազիվ կարող էր հասնել Բագրեվանդի հարթավայր:

Այնուհանդերձ, հավաստի չէ, թե Լուկուլլոսը կարող էր առաջ ընթանալ այդքան հեռու, և որ նա, իրոք, շարժվել է դեպի Արտաշատ: Իսկ այն, ինչ լսում ենք Հայաստանում տարվա եղանակի մասին՝ իր անճշգրտությամբ կարող է մեր հավատը սասանել տեղեկությունների արժանահավատության հանդեպ:

Աշնանային գիշերահավասարի ժամանակաշրջանը, սեպտեմբեր ամիսը, համընկնում է Հայաստանում տարվա լավագույն եղանակներից մեկին, ինչը հակասում է այն ամենին, ինչ հաղորդում է մեր սկզբնաղբյուրը: Ամեն դեպքում, ցրտի չափից դուրս լինելու վտանգի հավանականությունը բացառվում է, տարվա այդ եղանակին Հայաստանում հնարավոր չէր լինի հանդիպել ո՛չ սառած գետերի, ո՛չ սառած մարդկանց, ո՛չ ձյունածածկ արահետների:

Իր նահանջն արդարացնելու համար, որի իրական պատճառը հարկ է դեռևս փնտրել, հռոմեացի զորավարը նպատակահարմար է գտել պատասխանատվությունը բարդել անբարեհաճ եղանակի և դրանով մեկնաբանված՝ անհնազանդ զինվորների վրա:

Եթե մենք չենք ցանկանում մեր հեղինակին մեղադրել նման լուրջ սխալ թույլ տալու համար, հարկ կլինի ընդունել, որ հայերի հետ Լուկուլլոսը պետք է, որ գործ ունեցած լիներ ոչ թե Բագրեվանդում, այլ որևէ այլ տեղ՝ լեռներում, որտեղ օդն ավելի խստաշունչ է, շատ ավելի սառը, քան հարթավայրերում: Այս լեռները կարող էին լինել միայն Բինգյոլի զանգվածները (Սրբաբոնի Արոսը): Ընդունելով այս՝ Լուկուլլոսի արշավանքը կներկայանա այլ լույսի ներքո: Նրա մտադրությունը հանգում էր ոչ թե դեպի Արտաշատ, այլ Հայաստանի վրայով դեպի Պոնտոս՝ իր զորավար Սոռնատիոսի մոտ գնալուն: Այս պարագային, Տավրոսի վրայով Մուշի հարթավայր իջնելուց հետո, նա պետք է անցներ Արածանին և Բինգյոլով ճանապարհ հարթեր դեպի Կարենիտիսի (այսօր՝ Էրզրում) տարածաշրջան, իսկ այնտեղից՝ դեպի Պոնտոս: Այս կերպ կարելի է արդարացված համարել գետի անցումին և տարվա վատ եղանակին վերաբերող հիշատակումը:

Ճակատամարտը, որին առնչվում է խոսքը, կարող էր տրված լինել [Արածանի] գետից այն կողմ, լեռների լանջի վրա: Թվում է, թե Լուկուլլոսն ավելի շուտ տանուլ էր տվել, քան հաղթանակ շահել, ինչը կարող էր լինել նրա նահանջի իրական պատճառը: Ճիշտ կլինի անվստահությամբ վերաբերվել հաղթանակին, որի հետևանքով երեք թագավոր՝ Տիգրանը,

մարերի թագավոր Միհրդատը և Պոնտոսի թագավոր Միհրդատ [Եվպատորը], ինչպես փորձում են դրա հանդեպ հավատ ներշնչել, կարող էին մատնված լինել փախուստի, իսկ Պոնտոսի թագավորը՝ ամենախայտառակ ձևով առաջինը թիկունքը շրջած լիներ[1]:

Ուշադրության է արժանի այն, որ հենց Միջագետք վերադառնալու համար Լուկուլլոսը հարկադրված էր ընտրել այլ ճանապարհ: Այն ճանապարհը, որն Արածանիի հովտից՝ Տավրոսի վրայով ձգվում է Միգդոնիա, անցնում է Բիթլիսի կիրճով: Լուկուլլոսն, այսպիսով, Արածանիի հովիտ մուտք գործելու համար հետևել էր այդ ճանապարհի: Դա պետք է լիներ Ամիդ-Բալու գիծը կամ Ամիդ-Մարտիրոպոլիս-Սասուն գիծը, որը Բիթլիսի կիրճից հեռու չէ[2]:

Վերադառնալով Միջագետք, Լուկուլլոսը կանգ է առել կորդվացիների մոտ, որոնց թագավոր Զարբիենոսը՝ իր տիրոջը՝ Տիգրանին դավաճանելու համար՝ ամբողջ ընտանիքի հետ մեկտեղ մահվան էր դատապարտվել: Լուկուլլոսը նշել է իր դաշնակցի հիշատակը շքեղ հուղարկավորությամբ և կառուցել է տվել թանկարժեք դամբարան: Հավանաբար, բարեկամ ժողովրդի մոտ գալու համար է, որ Լուկուլլոսը փոխել է իր ճանապարհը՝ իջնելով Միջագետքի հարթավայր: Բարեկամական ընդունելությունը չի խանգարել Լուկուլլոսին կողոպտելու Զարբիենոսի ապարանքը և հափշտակելու գանձերն ու 300 հազար մեդիմն ցորենը, որն ամբարված էր այդտեղ:

Լուկուլլոսի հաջողությանն առնչվող վերջին գործողությունը եղել է Մծբինի գրավումը: Ուժերը Կորդուքում վերականգնելուց հետո, հռոմեացի զորավարը եկել է պաշարելու Մծբինը: Քաղաքը գտնվում էր Գուրասի՝ Տիգրանի եղբոր, հրամանատարության տակ: Քաղաքի պաշտպանությունը հանձնարարվել էր ճարտարագետ Կալլիմաքոսին, որը Լուկուլլոսի համար մեծ խոչընդոտներ էր հարուցել դեռևս Ամիսոսի պաշարման ժամանակ: Կայազորն արիաբար ետ է մղել հռոմեացիների հարձակումները, սակայն, տարվա վատ եղանակի պատճառով այն դարձել է նվազ զգոն: Փոքրկալից մի գիշեր Լուկուլլոսը գրոհել է և գրավել քաղաքը[3]:

---

[1] Ըստ Փլեգոն Տրալլացու (fr. 12)՝ Տիգրանի կորուստները հասել են 5000 սպանվածի (**C. Müller, Fragmenta historicorum graecorum, t. III, p. 606**): Հետաքրքիր է, որ Ապպիանոսը չի հիշատակում Արտաշատի մասին և նշում է միայն հեծելազորի մարտի մասին (**Mithridatica, 87**): Դիոնին հայտնի չէ մարտի վայրը (36,7): Ամեն ինչ դրդում է կարծելու, որ Պլուտարքոսը չափազանցել է արշավանքի նշանակությունը:

[2] Ըստ Սեքստոս Ռուփոսի՝ Լուկուլլոսը վերադարձել է Միլիտենեով:

[3] Գրավումը հիշատակել է Եվսեբիոսը (Chronicon, v. II, 135, ed. A. Shoene, Berlin, 1875):

Այս պահից ի վեր, Լուկուլլոսի կարիերան մտնենում է ավարտին: Բախտը նրանից շրջվում է մեկընդմիշտ: Բանակը հրաժարվում է հետևել նրան: Սա խիստ տարօրինակ է: Հաղթանակած բանակը երբեք չի լքում իր զորավարին, եթե նա իրոք նպաստել է նրա ռազմական սխրանքներին: Վատթարագույնն այն էր, որ նույնիսկ Հռոմում դժգոհում էին Լուկուլլոսից: Նրան մեղադրում էին հրամանատարի դիրքը չարաշահելու և շահասիրության համար պատերազմը ձգձգելու, Տիգրանի թագավորական նստավայրերը կողոպտելու համար, «կարծես թե նրան այնտեղ էին ուղարկել թագավորներին կողոպտելու, այլ ոչ թե նրանց դեմ պատերազմելու համար»:

Բախտի շրջադարձը բացատրելու համար Լուկուլլոսի պատմիչը նշում է. «Ինչ վերաբերում է զինվորների անբարյացակամությանը, ապա դա նրա վատ բնավորության հետևանքն էր»: Այդքան զովեստներ շռայլելուց հետո Լուկուլլոսի «բարի և շատ լուսավորյալ հոգու» հասցեին, նա հարկադրված է խոստովանել, որ զորավարն ամենևին հեզ բնավորություն չուներ, և որ «նա արհամարհանքով էր վերաբերվում բոլորին և ուրիշներին դիտում էր, իր համեմատությամբ՝ իբրև ոչնչություններ»: Երբ Լուկուլլոսը Տիգրանին ներկայացնում է իբրև շքեղություն սիրող փառասերի, գոռոզի, ժլատի և եսասերի՝ նա հանձին Տիգրանի տեսել և ուրվագծել է իր դիմապատկերը:

Լուկուլլոսի հանդեպ ատելությունը համընդհանուր էր: Նույնիսկ նրա աներորդին՝ ոմն Պուբլիոս Կլավդիոս (25), որն այդ ժամանակ հավանաբար գտնվում էր Լուկուլլոսի բանակում, գոհ չլինելով իր զբաղեցրած դիրքից, սկսել է զորքերին գրգռել և սաստկացնել նրանց անհնազանդությունն ընդդեմ Լուկուլլոսի: Այս երիտասարդը, ինչպես և նրա քույրը՝ Լուկուլլոսի կինը, արատավոր բարքերի տեր էին: Վերջինիս մեղադրում էին իր եղբայրների հետ մեղսալի հարաբերության մեջ գտնվելու համար: Զորավարի մայրը ևս վատ համբավ էր վայելում: Զինվորների գրգռվածությունն այն աստիճանի էր հասել, որ նրանք իրենց դատարկ քսակները նետում էին Լուկուլլոսի առջև՝ նրան ասելով, թե քո՞ղ ինքը միայնակ մարտնչի թշնամիների դեմ, որոնց հարստությունը յուրացրել էր միայնակ:

Ըստ Լուկուլլոսի համոզիչ թվացող ուղերձների՝ Հռոմում կարծում էին, թե Տիգրանը և Միհրդատը գլխովին ջախջախվել են, երբ այստեղ վրա է հասել լուրն այն մասին, որ այս երկու թագավորները ոչ թե պարտվել էին, այլ ասպատակում էին Կապադովկիան ու Պոնտոսը: Իսկույն ևեթ Լուկուլլոսին կարգադրում են իր լիազորությունները հանձնել Պոմպեոսին, որը պետք է

հաջորդներ նրան: Սպասելով Պոմպեոսին, Լուկուլլոսը ձմեռել է Կորդուքում՝ 68-67 թթ. ձմեռն այդտեղ անցկացնելու համար[1]:

Արածանիի ճակատամարտն այնպիսի բարեպատեհ հետևանքներ չէր ունեցել Լուկուլլոսի համար, ինչպես դրանք ներկայացնում են, իսկ իրադարձությունները ծավալվել են բոլորովին այլ կերպ. այդ մասին կարելի է դատել ըստ այն բանի, որ Տիգրանը և Միհրդատը իսկույն ևեթ հարձակման են անցել և ազատակել՝ մեկը Փոքր Հայքն ու Պոնտոսը, մյուսը՝ Ծոփքը:

Միհրդատն անցել է Եփրատը՝ 8000 մարդուց բաղկացած հայկական մի զորամասի գլուխն անցած: Բնակչությունը նրան դիմավորել է ուրախությամբ. օտարի տիրապետությունից վրդովված՝ այն ապստամբել է և կոտորել երկրում ցաքուցրիվ եղած հռոմեացիներին: Առաջին ճակատամարտը տրվել է Կաբիրայի, երկրորդը՝ Գազիուրայի մոտ: Հռոմեացի զորավարներ Ֆաբիոսը և Տրիարիոսը պարտվել են և կորցրել 7000 զինվոր, 24 զինվորական տրիբուն ու 150 ցենտուրիոն:

Քիչ անց Կապադովկիայում հայտնվել են Տիգրանը, նրա փեսա Միհրդատը՝ Մարաստանի թագավորը, և մեկ անգամ ևս վտարել Արիոբարզանես թագավորին:

Լուկուլլոսը, որը «պատրվակ բռնելով ձմեռը»՝ ճամբարել էր Կորդուքում, հենց որ լուր է ստացել Միհրդատի՝ Սոռնատիոսի և Տրիարիոսի հետ մարտնչելու նախապատրաստությունների մասին, ճանապարհ է ընկել դեպի Պոնտոս՝ նրանց օգնելու համար: Մինչև Լուկուլլոսի ժամանումը՝ «հաղթանակը կորզելուն նախանձախնդիր» Տրիարիոսը մարտի է բռնվել և Գազիուրայում պարտվել:

Լուկուլլոսը ժամանել է մի քանի օր անց: Միհրդատը չի ցանկցել մարտնչել, նա սպասում էր Տիգրանին, որը գալիս էր մեծ բանակի հետ միասին:

Լուկուլլոսը վճռել է գնալ Տիգրանին ընդառաջ և խանգարել նրան միանալու Միհրդատին: Սակայն, զորքերը հրաժարվել են նրան հետևել: Զորավարին մնում էր միայն սպասել իրեն հաջորդող Պոմպեոսին և նրան փոխանցել իր լիազորությունները: Երկու զորավարների հանդիպումը տեղի է ունեցել Գալատիայում գտնվող մի գյուղում: Նրանք միմյանցից բաժանվել են ավելի, քան երբևէ թշնամացած: Լուկուլլոսի ռազմական

---

[1] **Plutarchi,** Lucullus, 33. Այն, ինչ Պլուտ[արքոսը] պատմում է Լուկուլլոսի Կորդուք կատարած այցի մասին (23-րդ գլ[ուխում]), չի առնչվում 69-68 թթ. ձմռանը, այլ շատ ավելի ուշ՝ 68-67 թթ. ձմռանը, այն է՝ Լուկուլլոսը մուտք է գործել Կորդուք Մծբինի գրավումից և ո՛չ Տիգրանակերտի ճակատամարտից հետո:

հրահանգները հռչակվել են անվավեր: Պոմպեոսը Լուկուլլոսից վերցրել է նրա զորքերը և թողել միայն 1600 զինվոր՝ նրա հաղթահանդեսի համար:

Լուկուլլոսը գլխահակ ուղևորվել է Հռոմ: Դրանից հետո նա լքել է քաղաքական կյանքը, գնացել իր պերճաշուք ապարանքները և ապրել ինչպես մի նորահարուստ՝ վատնելով իր արշավանքների ընթացքում թալանած անհամար հարստությունները: Ստոիկ Տուբերոնն իրավացի է եղել, երբ նրան անվանել է «տոգա կրող Քսերքսես»:

Լուկուլլոսի կենսագրությունում, ինչպես հարկադրված է խոստովանել նրա պատմիչը, «ասես հին կատակերգությունում, սկզբում կարդում ես պետական ու ռազմական գործերի մասին, իսկ վերջում՝ զինարքուքների, խնջույքների, երգերով ու ջահերով կատարվող հարբած երբերի և, ընդհանրապես, ամեն կարգի զվարճանքների մասին»:

Նախքան գերեզման իջնելը Լուկուլլոսը կորցրել է մտավոր ունակությունները և պատմությանը թողել ոչ այլ ինչ, եթե ոչ լուկուլլոսյան խրախճանքների մասին հուշը: Այսպիսին է եղել Արևելքի երեք ամենահզոր թագավորներին՝ կարծեցյալ հաղթողի տխուր վախճանը:

Պոմպեոսը բեմահարթակ է բարձրացել իր նախորդին հանդիմանելով՝ պատերազմ մղելու համար երկու թագավորների թվացյալ փառքի և համբավի դեմ, մինչդեռ նրանց իրական հզորության դեմ դեռևս հարկ էր մարտնչել: Լուկուլլոսը, փոխարենը, կարծում էր, որ Պոմպեոսը եկել է կռվելու ստվերի հետ, ինչպես թռչունը, որը նետվում է այլոց կողմից սպանված անձյունների վրա[1]:

Անվիճարկելի էր, որ Լուկուլլոսի կարծեցյալ նվաճման պատրանքը ցրվել էր ինչպես մշուշը: Հռոմեական արծիվները հարկադրված էին եղել նահանջել Եփրատից այն կողմ, վերադառնալ իրենց ելման դիրքերը:

66 թ. գարնանը Պոմպեոսը ստանձնել է բանակի հրամանատարությունը: Լինելով ավելի խորաթափանց, քան Լուկուլլոսը, Պոմպեոսը նախ ջանացել է թշնամու ճամբարը մասնատել հռոմեական մեթոդով՝ divide et impera (26):

Նա Միհրդատին առաջարկել է հաշտություն՝ նրան, անկասկած, Տիգրանից վանելու համար: Միաժամանակ, նա դեսպանություն է ուղարկել պարթևների թագավոր Հրահատ [III]-ի (70-57) մոտ՝ առաջարկելով նրան դաշինք կնքել և փոխարենը խոստանալով՝ Եփրատի սահմանը: Այս խոստումն ուներ միայն մեկ նպատակ՝ մեկուսացնել Տիգրանին: Իր հերթին Միհրդատ Պոնտացին հույս չունենալով, որ կարող է Տիգրանին նոր արկա-

---

[1] Plutarchi, Pompeius, 31.

ծախնդրության մեջ ներքաշել, նույնպես փնտրում էր պարթևների աջակցությունը:

Հրահատն իրեն դրսևորել է բավականին միամտաբար՝ վստահությամբ վերաբերվելով հռոմեացի զորավարի խոստումներին և հրաժարվել բա-Միհրդատ Պոնտացու բարեկամությունից: Վերջինս հիասթափված, բանակցություններ մեջ է մտել Պոմպեոսի հետ, սակայն, առանց արդյունքի հասնելու: Պոմպեոսն իրեն զգում էր դրության տերը և արշավել է Պոնտոսի թագավորի դեմ:

Միհրդատի բանակը բաղկացած էր 30.000 հետևակայինից և երկու կամ երեք հազար հեծյալից: Պոմպեոսի տրամադրության ներքո կար դրանց կրկնակին: Ճակատամարտ սկսելը Միհրդատի համար վտանգավոր էր: Ուստի, նա կարծել է, որ խելամիտ կլինի նահանջել դեպի Հայաստանի սահմանը Լյուկոսի [Գայլ գետ] հովտով: Այն վայրում, որտեղ ավելի ուշ վեր կխոյանա Նիկեպոլիսը, տեղի է ունեցել ճակատամարտ, որի ընթացքում Միհրդատը կրել է առաջին պարտությունը[1]:

Նա շարունակել է իր նահանջը և ճամբարել Դաստեյրայի մոտ (այսօր՝ Դաստոռ, Կամախի և Ակնի միջև) և ոչ թե Նիկեպոլիսի, ինչպես կարծում է Թ. Ռեյնաքը[2]: Պոմպեոսը հետապնդել է Միհրդատին և պաշարել նրան, որը դիմադրել է 45 օր: Այնուհետև՝ Միհրդատն անսկատ փախել է և նահանջել երկու օր: Երրորդ օրը հռոմեացիները հարձակվել են նրա վրա և կոտորել 10.000 մարդու: Նա հազիվ է փրկվել ճակատամարտի դաշտից իր 800 թիկնապահների հետ և կանգ առել Սինորիա [ամրոցում], որտեղ գտնվում էին նրա գանձերը և թանկարժեք կահկարասիքը: Այդտեղից նա երրորդ անգամ ճանապարհ է ընկել դեպի Հայաստան:

Տիգրանը միանգամայն իրավացի է եղել՝ մերժելով ապաստան հատկացնել մեծ արկածախնդրին, որը եղել է նրա անհաջողության հիմնական պատճառը: Ըստ շրջանառվող շշուկի՝ Տիգրանը նույնիսկ խոստացել էր, որ 100 տաղանդի չափով կպարգևատրեր նրան, ով կբերեր Միհրդատի գլուխը: Վերջինս հարկադրված է եղել փրկվել՝ ճողոպրելով Կողքիս:

Պոմպեոսը, ազատագրվելով այդչափ համառ թշնամուց, ուղղություն է վերցրել դեպի Հայաստան, ընթանալով Երզնկա-Էրզրում ճանապարհով: Երբ նա մտել է Արաքսի հովիտ, իր առջև տեսել է Տիգրանի որդուն՝ Տիգրան Կրտսերին: Սա, իհարկե, տեղի է ունեցել Բասենի՝ Ստրաբոնի Փասիանենի,

[1] [Բնագրում հղումը բացակայում է: – Ծ. թ.]:

[2] **Th. Reinach**, op.cit., p. 385.

գավառում, որը գտնվում էր Արաքսի վերին հոսանքի մոտ: Ասում են, որ Տիգրան Կրտսերն է հռոմեական բանակին առաջնորդել դեպի Արտաշատ:

Զարմանալի է հայ արքայազնին տեսնել կշտամբանքի այդչափ արժանի դերում՝ առանց անհրաժեշտ չափով տեղեկացված լինելու դրա շարժառիթներին: Պատմիչները համերաշխորեն ներկայացնում են նրան՝ իբրև դավաճանելու հակում ունեցողի, որը դավաճանում է՝ դավաճանելուց հաճույք ստանալու համար, որը գործում է միայն իր հոր և իր երկրի թշնամիների օգտին՝ կանգնելով իր աներոջ (27) կամ իր պապի (28), վերջապես հռոմեացիների կողքին՝ և միշտ իր հոր դեմ:

Մեզ հավատացնում են, որ իր ստոր դիրքորոշման համար դավաճան արքայազնը չուներ որևէ այլ շարժառիթ, քան հայրական իշխանության նկատմամբ հավակնությունները: Սա մի բացատրություն է, որը նույնքան կամայական է, որքան և ծամծմված: Յոթանասունամյա Տիգրանը, որը չափազանց մոտ էր գերեզմանին, չէր կարող խիստ անհանգստացնել անհամբեր ժառանգորդին, որպեսզի վերջինս նրա օրերը կրճատելու նպատակով բռնություն գործադրեր կամ ստորության դիմեր: Այլ առիթով Պոմպեոսն իրավամբ կնկատի, որ Տիգրան Կրտսերը «շատ ավելի մոտ էր իր հորը, քան աներոջը»[1]: Ինչո՞ւ, ուրեմն, նա պետք է դավաճանած լիներ հորը հանուն ուրիշի շահի:

Կարծեցյալ դավաճանի ողբալի վախճանը, ինչը պետք է զարդարեր Պոմպեոսի հաղթանակը, ինչին, ասում են, որ նա նպաստել է, վկայում է, որ հարկ չկա առանց քննադատական մոտեցման հավատ ընծայել այն ամենին, ինչ պատմում են Տիգրան Կրտսերի մասին:

Խոսելով Տիգրան [Մեծի] ընտանեկան ողբերգության մասին, պատմիչները չեն հիշատակում նրա որդի Արտավազդին, որը հաջորդել է նրան: Նրանք ճանաչում են Տիգրան Կրտսերին և մեկ այլ որդու, որի անունը չի պահպանվել: Ըստ նրանց պատմության՝ մի օր, երկու որդիների ուղեկցությամբ, Տիգրանը գնացել է որսի և այնպես է ստացվել, որ ընկել է ձիուց և վիրավորվել: Այն դեպքում, երբ Տիգրան Կրտսերը, մնալով հոր մոտ, նրան բարեխղճորեն խնամում էր՝ ըստ իր որդիական պարտքի, մյուս որդին, կարծելով, որ նա արդեն վախճանվել է, շտապել է հափշտակելու թագավորական գահը: Հենց որ թագավորը գիտակցության է եկել, անզգույշ որդին պատժվել է՝ դատապարտվելով մահվան, և Տիգրան [Կրտսերը] հռչակվել է գահի ժառանգորդ:

---

[1] Plutarchi, Pompeius, 33.

Միանգամայն պատահական մեկ այլ նշում՝ մեզ տեղեկացնում է Տիգրանի ևս մեկ Զարիաստեր անվամբ (Զարիադրեսի աղավաղումը) որդու գոյության մասին: Վերջինս, մի քանի բարեկամների հետ դավադրություն էր կազմակերպել հոր դեմ և բոլոր դավադիրները երդում էին տվել՝ խմելով փոխադարձաբար իրենց աջ ձեռքից հանված արյունը[1]: Թվում է, թե իր հոր հրամանով մահվան դատապարտված անանուն որդին եղել է ինքը Զարեհը: Դավադիրները կարող էին ցանկացած լինել որսի ընթացքում սպանել թագավորին, հավանաբար, օգտվելով պատահարից, որի զոհը դարձել է թագավորը՝ ընկնելով ձիուց:

Տիգրանն այսպիսով, ուներ, երեք որդի՝ Զարեհ, Տիգրան և Արտավազդ: Առայժմ խոսքը դեռևս չի առնչվում վերջինին՝ գահի ապագա ժառանգորդին: Քանի որ Զարեհը զոհվել էր, մնում էր միայն Տիգրան [Կրտսերը], որն իր հոր կողմից ճանաչվել էր իբրև գահի ժառանգորդ: Որդի Տիգրանին, իբրև իր հորը, ծեր թագավորին, այդչափ սիրով վերաբերվողի ներկայացնելուց հետո, անխոհեմ կլինի նրան մեղադրել դավաճանության և իր երկրի դեմ թշնամական գործողություններին առնչվող հանցանքներում:

Երբ Տիգրան [Մեծը] Լուկուլլոսին վտարելուց հետո առաջ է ընթացել և սկսել ասպատակել Կապադովկիան, նրա որդի Տիգրանն ապստամբել է հոր դեմ: Տիգրանը վերադարձել է արշավանքից՝ պատժելու համար ապստամբին, սակայն, նա, իր հանցակիցների հետ, խուսափել է հոր զայրույթից՝ փախչելով պարթևների թագավոր Հրահատի մոտ, որի դուստրը նրա կինն էր: Հրահատն արշավանք է ձեռնարկել Տիգրանի դեմ իր փեսայի պատճառով: Հայոց թագավորը պարթևական զորքերի ճնշման ներքո նահանջել է դեպի լեռները: Արտաշատը պաշարվել է, սակայն Հրահատը հեռացել է առանց գրավելու քաղաքը: Տիգրան [Մեծը] վերադարձել է: Նրա որդի Տիգրանը հարկադրված է եղել ապաստան որոնել Միհրդատ [Պոնտացու] մոտ, բայց անձամբ Միհրդատն անապաստան էր և վտարված իր երկրից՝ Կողքիսից այն կողմ: Այդ ժամանակ է նա վճռել գնալու Պոմպեոսի մոտ և նրան ծառայելու իբրև ուղեկցող՝ դեպի Արտաշատ:

Պատմիչները պատրաստ են խարազանել իրադարձությունների զարգացման ընթացքն արևելյան արքունիքներում՝ ներքին երկպառակությունները վերագրելով անազնիվ շարժառիթների: Եթե մենք չենք ցանկա-

---

[1] **Valerius Maximus**, IX. 11, extern. 3. "Cum Sariaster adversus patrem suum Tigranen, Armeniae regem ita cum amicis consenserit, ut omnes dexteris manibus sanguinem mitterent, atque eum invicem sorberent". [Տե՛ս նաև] պարսկական արտահայտությունը՝ **sevgand xʷordan**, որտեղից ծագում է հայերեն «երդումն ուտելը» [երդվելու իմաստով]:

նում բաժանել այս հռետեսական հայացքները և կարծում ենք, որ ազնվությունն ու պարտքի զգացողությունը միայն հռոմեացի զորավարներին վերապահված արտոնություններ չէին, պետք է հայ արքայազնի դիրքորոշման առնչությամբ փնտրենք ավելի լուրջ և համոզիչ շարժառիթ:

Տիգրանի արքունիքում ակնհայտորեն գոյություն է ունեցել մի կուսակցություն, որը հավանություն չէր տալիս արքայի ռազմական գործողություններին Կապադովկիայում և դրանք դիտում էր իբրև վտանգներով լի նոր արկածախնդրություն: Թագավորի որդին, հավանաբար, եղել է այս կուսակցության ղեկավարը: Իբրև պարթևների թագավորի փեսա՝ նա գիտեր, թե ինչ էր տեղի ունենում պարթևական արքունիքում, որ Պոմպեոսը Հրահատ թագավորին կաշառել էր: Հայաստանի վիճակը ճգնաժամային էր: Պարթևները ասպատակել են Հայաստանը ոչ թե Տիգրան արքայազնին գահ բարձրացնելու նպատակով, այլ Պոմպեոսի հետ գաղտնի համաձայնագրի հիման վրա: Տիգրան Կրտսերն անզոր էր կանգնեցնելու Հրահատի բանակը, սակայն, Արտաշատն, այդուհանդերձ, չի գրավվել: Այդ հանձնարարությունը դրված է եղել Տիգրան [Կրտսերի] վրա, ինչը նշանակում է, որ հայ արքայազնը ստանձնել էր որոշ պարտավորվածություններ մայրաքաղաքի ճակատագրի համար, այն փրկելով պարթևական բանակի կողմից հնարավոր ասպատակումից:

Մինչ այդ, Միհրդատ [Պոնտացու] հետ հարցերը լուծելուց հետո, հռոմեական լեգեոնները հայտնվել են Հայաստանի սահմանում:

Հենց որ հռոմեացի զորավարը ոտքը դրել է հայկական հողի վրա, պատմիչները վերածվում են բանաստեղծների: Նրանք պատմում են այնպիսի բաներ, որոնք մերձենում են լուկուլլոսյան ավանդույթին:

Հավաստիացնում են, որ Պոմպեոսը Հայաստան է մուտք գործել ոչ թե սեփական նախաձեռնությամբ, այլ նրան կանչել է Տիգրան Կրտսերը, որը նրան առաջնորդել է Արտաշատ: Մայրաքաղաքից տասնհինգ մղոն հեռավորության վրա, իր բարեկամների ուղեկցությամբ, Տիգրան [Մեծը] գնացել է հանձնվելու Պոմպեոսին, տեղեկացված, որ զորավարը մեծահոգի է և մեղմ:

Հռոմեական ճամբար նրա հասնելու պահին, [Պոմպեոսի] երկու մականակիրներ մոտեցել են արքային և կարգադրել ցած իջնել ձիուց ու ճամբար մտնել ոտքով: Տիգրանը հնազանդվել է, հանել սուրը, այն տվել թիկնապահներին և հենց որ հասել է Պոմպեոսի մոտ, հանել է նաև խույրն ու դրել հռոմեացի զորավարի ոտքերի մոտ, ծնրադրել նրա առջև և փորձել համբուրել ծնկները:

Պոմպեոսը բռնել է նրա ձեռքը, նստեցրել իր կողքին, իսկ որդուն տեղավորել մյուս կողքին և ասել, որ արքային է թողնում այն ամենը, ինչ նա

ունեցել է մինչև իր ժամանումը, իսկ Ասորիքը, Փյունիկիան, Կորդուքը և Ծոփքը՝ Լուկուլլոսի գրաված երկրները, նրան չեն վերադարձվելու:

Պոմպեոսը Տիգրանից նաև պահանջել է հռոմեացիներին վճարել վեց հազար տաղանդ՝ իբրև փոխհատուցում կրած վնասների դիմաց, որոնք նա նրանց պատճառել է: Բացի դրանից, նրա որդին պետք է թագավորեր Ծոփքում:

Այս պայմաններով միայն հռոմեացիները պատրաստ կլինեն նրան ողջունելու իբրև թագավորի: Տիգրանը համաձայնել է այն ամենին, ինչ իրեն պարտադրել է մեծահոգի զորավարը և խոստացել, բացի դրանից, բաժանել յուրաքանչյուր զինվորի կես մինա, յուրաքանչյուր հարյուրապետի՝ տասը մինա և յուրաքանչյուր տրիբունի՝ մեկական տաղանդ: Ավելացնում են, որ Տիգրանի որդին՝ Պոմպեոսի կարծեցյալ դաշնակիցը, մնացել է խիստ դժգոհ և հրավիրվելով ճաշկերույթի, պատասխանել է, որ ո՛չ Պոմպեոսի և ո՛չ էլ նման պատիվների կարիքը չունի և, որ ինքը կգտնի այլ հռոմեացու:

Պոմպեոսը վրդովվել է և նրան նետել բանտ՝ իր հաղթահանդեսի համար: Պարթևների թագավոր Հրահատը միամտություն է ունեցել միջամտելու՝ պահանջելու համար երիտասարդին՝ իր փեսային, և Պոմպեոսին հիշեցնելու՝ իր նվաճումները մինչև Եփրատ սահմանափակելու նրա խոստման մասին: Հաղթանակած զորավարը պատասխանել է, որ իր սահմանները կլինեն նրանք, որոնք կհամարվեն արդարացի:

Ինքնին ակնհայտ է, որ բանաստեղծական այս պատմությունը պատիվ կբերի, հավանաբար, բարոյականություն քարոզող հեղինակի, բայց ոչ թե սթափ և օբյեկտիվ պատմիչի: Պատմիչների ուրվագծած այս պատմությունը հանգում է, ի վերջո, անձամբ Պոմպեոսի վարկածին: Լինելով Լուկուլլոսի արժանի հաջորդը, թվում է, թե Պոմպեոսն իր պաշտոնի հետ մեկտեղ ժառանգել է նաև նրա արատները՝ մեծամտությունը և սնապարծությունը:

Պատմության միտումն ակնբախ է և հանգում է հաղթանակած զորավարի բնավորության մեծահոգությունը և մեղմությունը բացահայտելուն: Իրականում դա պոռոտախոսություն է, որը թաքնվում է նրա արժանիքների քողի տակ: Լուկուլլոսը չի կարող պատսպարվել հանդիմանանքներից՝ իր ավերածությունների և ընչաքաղցության համար: Համանման հանդիմանանքներից Պոմպեոսին ազատագրելու համար, իրադարձությունները աղավաղում են՝ բեմահարթակ դուրս բերելով Տիգրան Կրտսերին, որը կանչում է Պոմպեոսին: Ինչը, որ կարող է և պետք է նախապաշարումներից զերծ պատմաբանը շտկի այս ամբողջ պատմության մեջ, այն է, որ Տիգրան [Կրտսերը] կա՛մ իր կամքով, կա՛մ իր հոր կարգադրությամբ է հայտնվել Պոմպեոսի առջև՝ հաշտության շուրջ բանակցություններ վարելու համար:

Այն պահից, երբ Տիգրան [Մեծը] մերժել էր ապաստանել Պոնտոսի թագավորին, հռոմեացիները պետք է հաշտվեին նրա հետ: Պոմպեոսը ոչ մի շահ չուներ հայոց թագավորի խաղաղասիրական առաջարկը մերժելու համար: Հաշտությունը նրա համար կարող էր լինել նույնիսկ ցանկալի՝ եթե նա ծրագրում էր հետապնդել Միհրդատին կամ ներխուժել Իբերիա և Աղվանք:

Ուստի, նա հավանություն է տվել Տիգրանի առաջարկած պայմաններին. վերջինս ճանաչվել է իր տիրույթների տիրակալը և համաձայնվել վճարել ռազմատուգանք:

[Պոմպեոսի ճամբարում] Տիգրանի ընդունելության թատերական տեսարանին որևէ նշանակություն տալը մանկամիտ կլինի, որի ընթացքում, ասում են, թե թագավորն իբր կարող էր հանած լինել խույրը և սուրը՝ դրանք հռոմեացի զորավարի ոտքերի առջև դնելու նպատակով: Նման բնույթի միտումնավոր հերյուրանքը դարձել է սովորական, այն նպատակաուղղված է հաղթողին մեծահոգությամբ օժտելուն. դա յուրօրինակ դիմահարդարում է օրվա հերոսին զարդարելու համար, որը, սակայն, ոչ ավելին է, քան գունազարդումը կնոջ գեղեցկության համար:

Ոչինչով չի ապացուցվում, որ Տիգրանը՝ մեծ կայսրության հիմնադիրը, կարող էր ընդունակ լինել նման անօգտավետ ստորացման: Անկասկած, դժվար է այն հերքելն առանց հակառակն ապացուցող վկայության: Այդուհանդերձ, կան խորհրդածություններ, որոնք ծառանում են վստահության այս չարաշահման դեմ, որ պատմիչներն իրենց թույլ են տվել՝ հորինելով նման պատմություններ:

Հայտնի է, որ Արևելքում թագավորի առաջին հատկանիշը համարվում էր հպարտությունը՝ արժանապատվության զգացումը: Ուստի, թագավորներն իրենց համարում էին աստվածներ: Տիգրանը, որն իրեն հռչակել էր աստված, կարո՞ղ էր արդյոք այդքան նվաճումներից հետո բացառություն կազմել իր բնավորությամբ: Նա, ով սանձահարել էր և գահընկեց արել այդքան թագավորների, ավելի լավ, քան որևէ մեկը, գիտեր, որ ստորաքարշությունը ոչնչի չի ծառայում:

Պե՞տք է արդյոք հիշեցնել Տիգրանի որդի Արտավազդի հպարտ դիրքորոշման մասին Կլեոպատրա [VII-ի] հանդեպ՝ համոզվելու համար, որ Տիգրանն իր որդուն դաստիարակել էր այլ կերպ, այլ ոգով, քան այն, ինչը պատմիչները վերագրում են իրեն: Մենք կարծում ենք, որ հարկ է անվստահությամբ վերաբերել նման գեղազարդային տեսարաններին:

Տիգրան Կրտսերին առնչվող միջադեպի, Պոմպեոսի հետ նրա վեճի ակունքները հստակ չեն: Եթե նա Պոմպեոսին մատուցել էր այն ծա-

ռայությունը, որի մասին ասում են, ինչո՞ւ է նա այդչափ դաժան և անշնորհակալ վերաբերմունքի արժանացել: Հաղորդում են, ավելի շուտ՝ տեղ են թողնում կռահելու, որ որդին ձգտում էր հայրական թագին և հույս էր տածում ի գին դավաճանության՝ այն ստանալ Պոմպեոսի օգնությամբ: Ի՞նչ պատճառով պետք է հռոմեացի զորավարը նրան մերժեր հատկացնել այն, ինչը նրան էր խոստացվել, թեկուզ և Տիգրանի թագը: Երկուսից մեկը. կամ Տիգրան Կրտսերը դավաճան չէր և Պոմպեոսին որևէ ծառայություն չէր մատուցել, կամ Պոմպեոսը եղել է նենգ՝ դրժելով իր խոստումը, ինչպես վարվել է նույն կերպ պարթևների թագավորի հետ՝ անկախ հայտնի համաձայնագրից: Նրան ձեռնտու էր խաբել Հրահատ թագավորին: Սակայն, ինչը կարող էր լինել հայ արքայազնին կամ հավանական դաշնակցին նենգաբար վերաբերվելու շարժառիթը: Նա նույնիսկ նրան շղթայել է և տարել Հռոմ իր հաղթահանդեսի ընթացքում նրան իբրև գործող անձ ներկայացնելու համար, անկասկած, իբրև Տիգրան թագավորի նկատմամբ իր հաղթանակի ապացույց: Նա նրան տարել է իր ընտանիքի՝ կնոջ և երեխաների հետ միասին:

Այս մշուշապատ պատմությունից կարելի է հանգել այն հետևության, որ երկու Տիգրանները հետամուտ էին միևնույն գործընթացին: Հոր և որդու միջև չի եղել ոչ մի պառակտում, բացի, հավանաբար, նրանց բաժանող տարաձայնությունից, այն քաղաքականությանը հետևելու հարցում, որը հարկ էր որդեգրել Հռոմի նկատմամբ: Որդին իր վրա էր վերցրել հորը Պոմպեոսի հետ, արդեն ներկայացված պայմաններով, հաշտեցնելու նախաձեռնությունը: Այնուհետև, հռոմեացի զորավարն առանց որևէ պատճառի և չնայած կնքված հաշտությանը, գերեվարել է երիտասարդ արքայազնին, միայն մեկ մտահոգությունից դրդված՝ իր հաղթահանդեսը նրանով զարդարելու և Տիգրանի հանդեպ իր հաղթանակի շուրջ հավատ ներշնչելու համար: Այդ ժամանակ է, որ խաբված արքայազնը կարող էր արտահայտած լինել իր դժգոհությունը: Արքայազն Տիգրանի դժգոհությունը, մեր կարծիքով, հաջորդել է Պոմպեոսի վարքագծին և եղել է դրա հետևանքը և ոչ թե նախորդել է դրան՝ իբրև պատճառ (29):

Ծոփքն ու Կորդուքը, որոնք, անտարակույս, տրվել էին Տիգրան Կրտսերին, մնացել են նրա հոր տիրապետության ներքո: Պարթևների թագավորը հավակնում էր Կորդուքին և երբ փորձել է այն գրավել ուժով, Պոմպեոսը միջամտել է, ուղարկել մի զորամաս և նրան վտարել[1]: Այդ նույն Կորդուքի առիթով էր նաև, որ հայերն ու պարթևները վիճաբանում էին, և որ

---

[1] Plutarchi, Pompeius, 36.

Պոմպեոսը նրանց մոտ է ուղարկել երեք դատավորի՝ միջնորդ լինելու համար[1]:

Պոմպեոսն իր զորավարներից մեկին՝ Աֆրանիոսին թողել է Հայաստանում վերջինիս հսկելու համար, իսկ ինքը 66 թ. աշնանը գնացել հետապնդելու Միհրդատին: Պոմպեոսը ճամբարել է գրեթե այնտեղ, որտեղ այժմ գտնվում է Երևանը: Նա ընտրել է Դիլիջանի ճանապարհը՝ Աղստաֆայի հովտով իջնելու համար դեպի Կուրի ափերը: Հռոմեական բանակը պետք է գործ ունենար երկու ժողովուրդների՝ աղվանների և իբերների հետ՝ առանց դժվարության գետն անցնելու համար: Աղվանների թագավոր Օրոյզեսը Պոմպեոսին անցում է տրամադրել, սակայն, քանի որ ձմեռն Աղվանքի տարածքում նրան հանկարծակիի է բերել, նա օգտվել է առիթից, անցնել գետը և հարձակվել հռոմեացիների ճամբարների վրա, այն պահին, երբ նրանք նշում էին Սատուրնալիայի տոնը՝ 66 թ. դեկտեմբերի 17-ին:

Պոմպեոսը ետ է մղել հարձակումը, ներել թագավորին՝ նրա դավաճանության համար և նրա հետ հաշտություն կնքել: Ըստ վարկածներից մեկի՝ հռոմեացիների դեմ Օրոյզեսին հրահրել է Տիգրան Կրտսերը: Սա խիստ հավանական է, այն պատճառով, որ Աղվանքը, ինչպես նաև Իբերիան, մտնում էին Տիգրան [Մեծի] կայսրության մեջ (սակայն, ամբողջությամբ հասկանալի չէ, թե ինչպես է կարողացել գերված արքայազնը աղվանների հետ հարաբերություններ հաստատել): Օրոյզեսի բանակի թիվը հասցնում են 40 հազարի, ինչը թվում է չափազանցված:

65 թ. գարնանը Պոմպեոսը մուտք է գործել Իբերիա, ավելի ստույգ՝ Գոգարենե [Գուգարք] և գրավել Հարմոզիկայի և Սեվսամորայի բերդամրոցները: Արտոկես թագավորը, որը փախել էր Կուրից այն կողմ, նահանջել մինչև *Պելորոս* գետը, ջանացել է կանգնեցնել հակառակորդի առաջընթացը, սակայն, պարտվել է և հանձնվել Պոմպեոսի ողորմածությանը[2]: *Ինը հազար* իբեր զոհվել է մարտում, իսկ *տասը հազարը*՝ գերեվարվել:

[1] Plutarchi, Pompeius, 39.

[2] Նույն, 34; Cassius Dio Cocceianus 36, 45; 37, 1-3. 'Οροίζης (Appianus), 'Οροίσης (Cassius Dio Cocceianus), Orodes (Eutropius), Horodes (Orosius). Ֆլորոսը սխալմամբ՝ Օրոզես, Կողքիսի արքա և Հորոյես, Աղվանքի արքա: 'Αρτώκης, Artoches (Florus), Artaces (Orosius և Eutropius). Oroizes < hu – raučah, 'Αρτώκη < artawāka՝ նա, ով ճշմարտություն է ասում, հմմտ. Σανδώκης < spantawāka (J. Markwart, Untersuchungen zur Geschichte von Eran, Bd. I, Göttingen, 1896, S. 41):

Պոմպեոսն առաջ է ընթացել Կողքիսով: Միհրդատը ճողոպրել է դեպի հյուսիս՝ Մաքարեսի թագավորություն: Պոմպեոսը գտել է, որ փախստական թշնամուն հետապնդելով այդքան հեռու գնալը խիստ վտանգավոր կլինի:

Այդ պահին Պոմպեոսը տեղեկացել է, որ աղվանները *ապստամբել էին* երկրորդ անգամ: Այս լուրը, կեղծ կամ ստույգ, ստանալուն պես, նա ետ է վերադարձել և հարձակվել Աղվանքի վրա՝ հետևելով, թվում է, Ախալցխա-Ախալքալաք-Ծուլավեր-Կուր ուղղությանը: Գետն անցնելուց հետո նա երկար ճանապարհ է անցել՝ չոր ու ցամաք երկրով: Խոսքը վերաբերում է Կամբիսենե գավառին, հայերեն՝ Կամբեչան: Պոմպեոսն իր համար տասը հազար տիկից բաղկացած ջրի պաշարներ է կուտակել, ինչպես նախկինում Լուկուլլոսն էր պարտադրել, որ իրեն հետևեին՝ ցորեն տանող երեսուն հազար գալատացի, և հարձակվել է *Արաս* [Ալազան] գետի մոտ մարտական պատրաստության մեջ գտնվող թշնամիների վրա: Նրանց մեծ բանակը, որն ուներ 60 հազար հետևակ և 12 հազար հեծյալ, գլխավորում էր [Աղվանից] թագավորի՝ Կոզիս անվամբ եղբայրը: Պոմպեոսն իր ձեռքով է սպանել Կոզիսին, իսկ նրա զորքերը ցրվել են:

Հռոմեական բանակը ճանապարհ է ընկել նվաճելու Վրկանը և Կասպից ծովը, սակայն երեք օրվա ռազմերթից հետո այն կանգ է առել մեծ քանակությամբ թունավոր սողունների առկայության պատճառով: Պոմպեոսը հրաժարվել է ավելի առաջ ընթանալուց և նահանջել է ու հասել Փոքր Հայք՝ 65 թ. աշնան շրջանում[1]:

Նրա արշավանքների պատմությանը պակասում է ճշմարտացիությունը: Դրա քննությունն ու վերանայումը դժվարին է անվիճելի տեղեկությունների բացակայության պատճառով: Բայց երբ պատմիչն այնքան հեռու է գնում, որ պատմում է ամազոնուհիների լեռներից գալու մասին՝ աղվաններին օգնելու համար, նա դրանով վարկաբեկում է իր ամբողջ պատմությունը: Աղվանքն ի վիճակի չէր ոտքի հանել 72 հազար մարդու, ոչ էլ 40 հազարի, թվաքանակ, որը նույնքան առասպելական է, որքան Տիգրանի 250 կամ 300 հազարը: Հակառակորդների ուժերը չափազանցվում են, որպեսզի փառաբանեն Պոմպեոսի հաղթանակները:

Երկրորդ արշավանքն Աղվանքում հնարված է ad hoc (30), թվում է, թե այն բանի համար, որ քողարկվի Պոմպեոսի անվճռականությունը Միհրդատին հետապնդելու հարցում: Աղվանական ապստամբության մասին լուրը ևս հնարովի է: Աղավանները, որոնք Պոմպեոսի կողմից նվաճված չէին՝ կարիք չունեին ապստամբելու: Նույնիսկ եթե այդպես պատահած

[1] Plutarchi, Pompeius, 35-36.

լիներ, Պոմպեոսն ի՞նչ շահագրգռվածություն կունենար կրկին հրատապ ձեռնամուխ լինելու արկածախնդրական արշավանքի Աղվանքում, և դեպի Վրկան մտացածին ռազմերթից հետո, որն, այդուհանդերձ, նույնքան նվազ իրական է, որքան նրա մարտն ամազոնուհիների հետ, շտապ նահանջել Փոքր Հայք, կտրել անցնելով, այսպիսով, մի տարածություն, որը շատ ավելին է, քան 1000 կի[լոմետրը]: Պոմպեոսը բավականին զգույշ էր ոչ մի նշանակություն չունեցող ապստամբության պատճառով բանակն իր հետ Կովկասի մի ծայրից մյուսը տանելու և նահանջելու համար՝ անցնելու շատ ավելի երկար մի տարածություն[1]:

Միանգամայն բնական կլիներ, եթե Պոմպեոսը հասած լիներ Փոքր Հայք՝ ուղղակիորեն իջնելով Կողքիսից՝ Իբերիայով, Աղվանքով և Հայաստանով մի մեծ շրջանցք կատարելու փոխարեն: Նրա ներկայությունը հեպտակոմիտների մոտ, որտեղ կործանվել են նրա կոհորտաներից երեքը՝ վկայում է այդ ենթադրության օգտին: Դա ապացուցում է, որ Փոքր Հայք հասնելու համար Պոմպեոսը գնացել է Սև ծովիափամերձ գոտով: Ասպիսը, որտեղ նա կանգ է առել, համանման է Պտղոմեոսի Ասպային և Պևտ[ինգերյան] քար[տեզի] Հիսպային ու գտնվում էր Դասկուսայի և Մելիտենեի միջև: Եթե նա Ասպիս եկած լիներ Աղվանքից՝ Հայաստանի վրայով, նա պետք է բարձրանար մինչև հեպտակոմիտների երկիրը, իսկ այնուհետև կրկին հասներ իր հենակետին Ասպիսում, ինչն անհավանական է (31):

Կողքիսում՝ Միհրդատ [Եվպատորի]՝ պատերազմը վերսկսելու նպատակով նախապատրաստություններին տեղեկացված, Պոմպեոսն իջել է Փոքր Հայք, որը Պոնտոսի թագավորության հենակետն էր և սկսել է ավերել Միհրդատի վերջին բերդամրոցներն ու գանձապահետները, որոնք դեռևս ոչնչացված չէին՝ չնայած Լուկուլլոսի և Պոմպեոսի պնդումներին: Տալավրան, Քաիմը, Սինորիան, Սիմփորիոնը կատաղի դիմադրությունից հետո հանձնվել են ավելի շուտ սովի, քան թշնամու սրի հետևանքով:

Այս բերդամրոցների ավերումն ավարտելուց հետո, 64 թվականի գարնանը Պոմպեոսը գնացել է Ամիսոս: Ինչպես նախկինում Լուկուլլոսը, Պոմպեոսը շտապել է նվերներ և երկրներ բաժանել զորավարներին, որոնցով շրջապատված էր և որոնց թվում կարելի էր հաշվել բարբարոսների 12 (!) թագավորի: Այդ ժամանակ է, որ Կողքիսը տրվել է ոմն Արիստարքոսի, իսկ Գալատիայի Դեյոտարոս իշխանը ստացել է Փոքր Հայքը, խալիբների և տիբարենների երկիրը՝ Փառնակիա և Տրապիզոն քաղաքներով:

---

[1] Այն, ինչ ասում է Պլուտարքոսն այս արշավանքի մասին, անծանոթ է Դիոնին, որը նշում է միայն ղավաճան աղվանների մասին (37, 3):

Պոմպեոսը չէր կարող, արդուհանդերձ, հանգիստ լինել, քանզի Միհրդատը ողջ էր: Նրա հետ հարցերը վերջնականապես լուծելու համար նա հյուսել է հռոմեական քաղաքականության բնորոշ որոգայթներ, կարողացել ծեր մարտնչողի դեմ զինել նրա որդի Փառնակին և մեկնել է Ասորիք: Այդ ժամանակ օրինական թագավորներ չունեցող այս երկիրը Պոմպեոսը հռչակել է հռոմեական պրովինցիա: Այստեղից ի հայտ է գալիս, որ Ասորիքը դեռևս գտնվում էր հայկական տիրապետության ներքո և 64 թվականին է, որ, ըստ էության, այն ազատագրվել է Տիգրանի հպատակությունից: Պոմպեոսի՝ Ասորիքում գտնվելու ընթացքում, Միհրդատի կողմից մի դեսպանություն է եկել՝ նրան հաշտության առաջարկով դիմելու համար: Անկասկած, Միհրդատը հասկացել է Պոմպեոսի բանսարկություններից բխող վտանգը: Վերջինս պատասխանել է, որ Միհրդատն անձամբ պետք է գա՝ իրեն հնազանդություն հայտնելու: Միհրդատը համաձայնել է իր փոխարեն ուղարկել իր որդիներից կամ բարեկամներից մեկին[1]: Պոմպեոսը մերժել է, վստահ լինելով, որ ինքը նրան կձգի իր որոգայթների մեջ: Իրոք որ, երբ Հրեաստանը հպատակեցնելուց հետո Պոմպեոսը եկել է և ճամբարել Պետրա քաղաքի առջև, Պոնտոսից ժամանած սուրհանդակը բերել է Միհրդատի մահվան լուրը: Որդու՝ Փառնակի ապստամբությունը 63 թ. նրան դրդել է ինքնասպանության:

Սա Տիգրանի տխուր պատմության կրկնությունն է: Հռոմեացի զորավարը կիրառելով միևնույն գործելամիջոցը հասել է այն բանին, որ բաժանել է որդուն հորից: Փառնակը Միհրդատի ամենասիրելի որդին էր, ինչպիսին էր Տիգրան Կրտսերն իր հոր համար: Բացահայտորեն խոստովանելու փոխարեն, որ ստահող հանձնառությամբ ինքը գայթակղել է երիտասարդ արքայազնին և նրան հեռացրել հորից, Պոմպեոսը գերադասում է Փառնակին մեղադրել անազնվության և իշխանատենչության մեջ, որը կարող էր ցանկացած լինել ազատվել հորից և զավթել իշխանությունը:

Միհրդատի մահվան լուրն ստանալուն պես, Պոմպեոսը բռնել է վերադարձի ճանապարհը և շուտով հասել Հռոմ՝ տոնելու իր հաղթահանդեսը: Շքեղ հանդիսության ընթացքում առջևից տանում էին տախտակներ, որոնց վրա գրված էին նվաճված երկրների անվանումները՝ Պոնտոս, Հայաստան,

[1] Թ. Ռեյնաքն այս առիթով նշում է, որ «Միհրդատը Տիգրանը չէր»: Իր փոխարեն որդուն ուղարկելն, ըստ Ռեյնաքի տարօրինակ ըմբռնման, ավելի համարձակ է, քան անձամբ հանձնվելը: **Th. Reinach**, op. cit, S. 401.

Կապադովկիա, Պափլագոնիա, Մարաստան, Կողքիս, Իբերիա, Աղվանք, Ասորիք, Կիլիկիա, Միջագետք, Փյունիկիա, Հրեաստան, Արաբիա:

Դրանց վրա կարելի էր կարդալ, որ Պոմպեոսը գրավել է 1000 բերդամրոց և 900 քաղաք: Հասարակական եկամուտները հինգ հազար միրիադից հասել էին ութ ու կես հազար միրիադի (32): Հասարակական գանձարանն աճել էր և հասել քսան հազար տաղանդի, չհաշված այն, ինչը բաժանվել էր զինվորներին, յուրաքանչյուրին՝ նվազագույնը 1500 դրաքմե:

Գերիների թվում կարելի էր տեսնել Տիգրան [Մեծի] որդուն, վերջինիս կնոջը և դստերը, անձամբ Տիգրանի կնոջը՝ *Զոսիմային (33),* Միհրդատի քույրերից մեկին և հինգ դուստրերին, իբեր և աղվան պատանդների, Կոմմագենեի թագավորին, հրեաների թագավոր Արիստոբուլոսին[1]:

Այս ամենից հետո, զարմանալու հարկ չկա, երբ այս հաղթահանդեսի ընթացքում կարելի էր լսել, որ «Տիգրանը և Միհրդատը, Լուկուլլոսից հետո, այլևս չեն *[անընթեռնելի բառ],* Միհրդատը, թուլացած և իր առաջին մարտերի հետևանքով գրեթե ջախջախված, չի համարձակվել նույնիսկ մեկ անգամ իր բանակը ցույց տալ Պոմպեոսին, այլ փախել է մինչև Բոսպոր ու այնտեղ ինքնասպան եղել:

Տիգրանը՝ մերկ և անզեն ծնկի է իջել Պոմպեոսի առջև, հանել է խույրն իր գլխից և դրել Պոմպեոսի ոտքերի առջև, նրան շողոքորթելով, այսպիսով, այնպիսի նվերով, որն այլևս իրեն չէր պատկանում, քանզի Լուկուլլոսն այն մեկ անգամ բռնագրավել էր իր հաղթահանդեսի համար»[2]:

Տիգրանի հասցեին ցանկացած բնույթի շատախոսություններից և զրպարտություններից հետո, պատմիչը նույնքան անսպասելի, որքան և իրական խոստովանություն է անում, թե Լուկուլլոսը բազմաթիվ մարտերից հետո ի դեմս Տիգրանի հանդիպել է անպարտելի և *«վսեմ քաջությամբ օժտված թշնամու»*[3] (34):

---

[1] **Plutarchi,** Pompeius, 45.

[2] **Plutarchi,** Cimon et Lucullus, 3.

[3] Անդ:

## ՑԱՆԿ

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ

**Asdourian Pascal P.** Die politischen Beziehungen zwischen Armenien und Rom, von 190 v. Chr. bis 428 n. Chr, Venedig, 1911.

**Bloch Gustave.** L'Empire romain, Evolution et decadence, Paris, 1922.

**Bouche – Leclercq Auguste.** Histoire des Seleucides, Paris 1913-1914.

**Bouchier E. S.** Syria as Roman Province, Oxford, 1916.

**Chapot Victor.** La frontiere de l'Euphrate de Pompée à la conquête arabe (Bibl. Des Ecoles françaises d' Athènes et de Rome, 99), Rome, 1907.

**Charlesworth M. P.** Trade–Route and Commerce of the Roman Empire, Cambridge, 1924.

**Cumont Franz.** Etudes syriennes, Paris, 1917.

**Eckhardt. K. Die armenischen Feldzüge des Lucullus. Klio,** Beiträge zur alten Geschichte, Bd. IX, Leipzig, 1909, p. 400-412; Bd. X, Leipzig, 1910.

**Ferrero Guglielmo.** Grandeur et decadence de Rome. 6 vols, Paris, 1904-1908.

**Frank Tenney.** Roman imperialismus, New York, 1914.

**Frank Tenney.** History of Rome, London, 1924.

**Haserbock Johannes.** Untersuchungen zur Geschichte des Kaisers Septimius Severus, Heidelberg.

**Henderson Bernard W.** The Life and Principate of the Emperor Nero, London, 1903.

**Henderson Bernard W**. The Life and Principate of Hadrian, 1923.

**Meyer Eduard.** Caesars Monarchie und das Principat des Pompejus. 3 Aufl., Stuttgart - Berlin, 1922.

**Mommsen Th.** Römische Geschichte, Bd. 1-3, Berlin, 1854-1857, Bd. 5, Berlin, 1885.

**Reinach Th**. Mithradates Eupator, König von Pontos, Leipzig, 1895.

**Rostowzeff M. I.** The social and economic history of the Roman Empire, Oxford, 1926.

**Schneiderwirth Hermann.** Die Parther, nach griechische-römische Quelle, Heiligenstadt, 1874.

1. Նկատի ունի Քվինտոս Կուրտիոսին: - էջ 433:

2. Ալեքսանդր Մակեդոնացու դեմ մարտնչող պարսկական զորամասերի կազմում է գտնվել նաև հայոց բանակը, որն, ի դեպ, պարսիկներից ու մարերից հետո քանակությամբ երրորդն էր: Հայերը գործուն մասնակցություն են ունեցել ինչպես Իսսոսի, նույնպես և Գավգամելայի ճակատամարտերին: Ալեքսանդր Մակեդոնացու դեմ ուղղված ռազմական գործողությունների ընթացքում հայոց բանակի ներակատարության հարցը բացահայտված է Մ. Օհանյանի «Ալեքսանդր Մակեդոնացու արևելյան արշավանքը և Հայաստանը» գրքում (Երևան, 2003): - էջ 433:

3. Ալեքսանդր Մակեդոնացու վերաբերյալ ստեղծվել է բազմալեզու վիթխարի գրականություն, որից կառանձնացնեինք ընդամենը մի քանիսը, որոնք, մեր կարծիքով, առավել ճշգրտորեն են բացահայտել մեծ զորավարի իրական նկարագիրը՝ **С. А. Жебелев,** Александр Великий, Петроград, 1922. **С. И. Ковалев,** Александр Македонский, Ленинград, 1937. **Ф. Шахермайр,** Александр Македонский, Москва, 1986 և այլն: Առանձնակի հետաքրքրություն ունեն Ալեքսանդր Մակեդոնացու արևելյան քաղաքականության հարցերին նվիրված հետևյալ գրքերը՝ **А. С. Шофман,** Восточная политика Александра Македонского, Казань, 1976. **Б. Г. Гафуров, Д. И. Цибукидис,** Александр Македонский и Восток, Москва, 1986 և այլն: - էջ 434:

4. Կուրտիոս Ռուփոսի երկի նոր՝ քննական բնագրում ընդունվել է «Ariarathe» ընթերցումը: - 436, ծան. 2.

5. Հայոց բազավորի անվան այս Արդոատես ձևը վեճերի առիթ է տվել: Վիճաբանական էր հատկապես, թե նա որտեղ է բազավորել՝ Մեծ Հայքում, թե՞ Փոքր Հայքում: Ուսումնասիրողներից շատերը (Ի. Դրոյզեն, Յո. Մարկվարտ, Հ. Մանանդյան, Գ. Սարգսյան և ուրիշներ) կարծում են, թե Արդոատեսը Օրոնտեսի աղճատված տարբերակն է և ըստ այդմ էլ գտնում են, թե սա եղել է Հայաստանի սատրապ այն Օրոնտեսը, որը մասնակիցն է Գավգամելայի ճակատամարտի և որը 331-330 թթ. իրեն հայտարարել է Հայաստանի բազավոր:

Ուսումնասիրողներին, ցավոք, առայսօր անծանոթ մնացած Ն. Աղոնցի հիանալի կռահումը գալիս է ամրապնդելու Արդոատես - Արոանդես - Օրոնտես - Երվանդ անվանաձևերի նույնացման հիմքերը: - էջ 441, ծան. 1:

6. Արռանդես (= Օրոնտես) թագավորի որդու և հաջորդի անունը վկայված է Կոմմագենեի Անտիոքոս I-ի արձանագրությունում: Ցավոք, արձանագրությունը եղծված է, և այժմ հնարավոր է ընթերցել միայն Արռանդեսի հաջորդի անվան վերջավորությունը՝ «... դանես»: Ուսումնասիրողները պարզել են, որ այս թագավորի կառավարման տարիները ընկնում են Ք. ա. III դ. առաջին չորս տասնամյակներին (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», ՀԳԱ ակադեմիայի հրատ., հատ. 1, Երևան, 1971, էջ 511): Ն. Ադոնցի երկերի սույն Դ հատորում լույս տեսնող «Հայոց քննական պատմության» 2-րդ հատորի նյութերը ցույց են տալիս, որ պատմաբանը լիովին ընդունել է Երվանդունիների արքայատոհմի գոյությունը Հայաստանում և անգամ առաջարկել նրա արքայացանկը (տե՛ս սստ, էջ 444, նաև էջ 605-606, ծան. 5-7): - Էջ 442:

7. Պահպանված վկայությունների համադրության միջոցով Ն. Ադոնցը առաջարկում է Երվանդյանների արքայատոհմի հետևյալ տոհմածառը՝




Առավել հետաքրքիր է Ն. Ադոնցի տեսակետն այն մասին, որ Սամոսն ու Արշամը պատկանում են Երվանդունիների արքայատոհմին և եղել են Հայոց ընդհանրական թագավորներ և ոչ թե միայն Ծոփքի, ինչպես ընդունված է հայագիտության մեջ: - Էջ 445:

8. Տվյալ հատվածում, թեև Ստրաբոնի խոսքը վերաբերում է III դ. վերջերի Օրոնտեսին (Երվանդ Վերջին), սակայն Ն. Ադոնցը առաջարկում է հատվածը սրբագրել ի նկատի ունենալով Գավգամելայի ճակատամարտի մասնակից սատրապ Օրոնտեսին (Երվանդ III): - Էջ 445:

9. Անտիոքոս III Սելևկյանի (223-187) և ժամանակի հայկական թագավորությունների փոխհարաբերությունների մասին մանրամասն տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Անտիոքոս Գ Սելևկյանը և հայկական պետությունները, «Բանբեր Երևանի համալսարանի», 1969, № 1: - Էջ 446:

10. Սելևկյանների պետությանը նվիրված ուսումնասիրություններից առանձնանում է Է. Բիկկերմանի ընդհանրացնող մենագրությունը («Государство Селевкидов», М., 1985): Տե՛ս նաև Հայաստանի և Սելևկյանների պետության փոխհարաբերությունների պատմությանն նվիրված միակ մենագրությունը (Ժ. Գ. Էլչիբեկյան, Հայաստանը և Սելևկյանները, Երևան, 1979): - Էջ 447:

11. Ք. ա. 165 թ. հայ-սելևկյան պատերազմի վերաբերյալ առանձին մանրամասներ է հաղորդում IV դարի քրիստոնեական եկեղեցու նշանավոր հայրերից Հիերոնիմոսը, որը դրանք քաղել է III դ. հույն պատմագիր Պորփյուրից: Այդ տեղեկությունների վերլուծությունը տե՛ս Գ. Խ. Սարգսյան, Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966: - Էջ 452:

12. Այն տպավորությունն է ստացվում, որ Ն. Ադոնցն արդեն նախապես անդրադարձել է այս հատվածում հիշատակվող գործող անձերին (Տերիտուշմ, Ուդիաստես, Փոքր Հայքի սատրապ Միհրդատ և այլն): «Մենք այն կարծիքն ենք հայտնել», «Մենք առիթն ունեցանք մատնանշելու» արտահայտությունները դրա վառ ապացույցն են: Սակայն որտե՞ղ է նա կարծիք հայտնել, որտե՞ղ է մատնանշել, դժվար է որոշակի բան ասել: Առկա նյութն այդ հնարավորությունը չի տալիս: Ուրեմն, ենթադրելի է, որ նա առանձին անդրադարձել է նաև Փոքր Հայքի Ք. ա. IV-II դարերի իրադարձություններին, որոնց մասին եղած նյութը, սակայն, մեզ մնում է անծանոթ: - Էջ 456:

13. Խոսքը Սելևկյան Դեմետրիոս I Սոտեր թագավորի (162-150) մասին է: - Էջ 456:

14. Կիկերոնի «Ի պաշտպանություն Պուբլիոս Սեստիոսի» ճառը, որ արտասանել է 56 թ. փետրվարին, հստակորեն ցույց է տալիս, որ այդ ժամանակ Տիգրան Մեծը դեռևս գործող թագավոր էր՝ «Տիգրանը..., որ այժմ թագավորում է Հայաստանում»: - Էջ 457, ծան. 5:

15. Արտաշեսյան արքայացանկի նման տարբերակ, որ միանգամայն հակադիր էր ավանդական արքայացանկին, Ն. Ադոնցն առաջին անգամ բերել է դեռևս 1908 թ.՝ իր «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում» ռուսերեն մենագրությունում՝




(տե՛ս **Н. Адонц**, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, стр. 427-428):
Վերջին տարիներին Արտաշեսյանների ծագումնաբանական ծառի տարբերակներ են առաջարկել Գ. Խ. Սարգսյանը («Свидетельство поздневавилонской хроники об Армении времён Тиграна II», «Պատմա-բանասիրական հանդես», 1991, № 2), Ռ. Լ. Մանասերյանը («Տիգրան Մեծ. Հայաստանի պայքարը Հռոմի և Պարթևստանի դեմ», Երևան, 1987, 2007), Վ. Սաքևոսյանը («Արտաշես Ա-ի և իր հաջորդների ժամանակագրության մասին», «Հանդես ամսօրյա», 1998, էջ 281-290), Հ. Պ. Հակոբյանը («Տիգրան Մեծ», Երևան, 2005): - էջ 458:

16. Վրիպակ է, այդ ժամանակ Կապադովկիայի թագավորն էր Արիոբարզանես I Հռոմեասերը (95-62): - էջ 459:

17. Այս մեջբերումը, թեև անմիջապես չի առնչվում բուն շարադրանքին, բայց լրացուցիչ հանգամանք է մատնանշում, որը, թերևս պետք է զարգացում ունենար «Քննական պատմության» ավարտուն բնագրում: - էջ 459, ծան. 2:

18. Հղելով Փավստոս Բուզանդին՝ Ն. Ադոնցը չի ներկայացրել ասելիքը: Անշուշտ, խոսվելու էր Արշակ II-ի հրամանով սպարապետ Վասակ Մամիկոնյանի կողմից վեց տարի շարունակ Գամիրք-Կապադովկիան ասպատակելու և թալանելու մասին (տե՛ս **Փաւստոս Բիւզանդ**, Դ, գլ. ժա): Միգուցե աղերսներ է փնտրել Տիգրան

II-ի կապադովկիական արշավանքների (93, 92, 74, 67-66 թվականներ) և վերը նշված 350-ական թվականներին Վասակ Մամիկոնյանի կազմակերպած ապստամբության միջև: Երկու դեպքերում էլ խոսքը նույն Կապադովկիան ավերածության ու թալանի ենթարկելու մասին է: - էջ 460, ծան. 8:

19. «Հռոմատյաց» մականվամբ հայտնի հույն հռետոր ու փիլիսոփա Մետրոդորոս Սկեպսիացին եղել է Տիգրան Մեծի պալատական պատմագիրը և գրել «Տիգրանի պատմությունը» վերտառությամբ մի երկասիրություն, որը մեզ չի հասել: - էջ 472:

20. Casus belli (լատիներեն) - պատերազմի առիթ: - էջ 472:

21. Ն. Աղոնցի բնագրում՝ քրմապետ: - էջ 473:

22. Տիգրանակերտի տեղադրության վերաբերյալ ստեղծվել է պատկառելի գրականություն (Կ. Լեման-Հաուպտ, Հ. Կիպերտ, Հ. Տաշյան, Հ. Աստուրյան, Հ. Մանանդյան, Գ. Սարգսյան, Երվանդ Քասունի և այլք ): Չնայած այդ հանգամանքին՝ հարցը կարոտ է լրացուցիչ պրպտումների: Տե՛ս վերջին լավագույն ուսումնասիրությունը, համապատասխան սկզբնաղբյուրների և ուսումնասիրությունների ցուցումներով՝ Բ. Հ. Հարությունյան, Տիգրանակերտ մայրաքաղաքի տեղադրության հարցի շուրջ, «Հայկազյան հայագիտական հանդես», հատ. ԺԴ, Բեյրութ, 1994: - էջ 477:

23. Ուսումնասիրողները գտնում են, որ այստեղ խոսքը Ամուդարյա (Արաքս) գետի ափերին բնակվող սակառաուկ («սև սկյութներ») կոչվող ցեղերի մասին է: - էջ 478:

24. Սկզբնաղբյուրների ուշադիր համադրության և հատկապես չեզոք պատմագիր Մեմնոն Հերակլեացու «Պոնտական Հերակլեայի պատմություն» երկասիրության շնորհիվ հնարավոր է որոշել Տիգրանակերտի ճակատամարտի մասնակիցների զինված ուժերի մոտավոր թվաքանակը: Հայկական բանակն ունեցել է առավելագույնը՝ 80 հազար զինվոր, իսկ հռոմեականը՝ 45 հազար, որից հռոմայեցիները՝ 24 հազար հետևակ և 1340 հեծյալ, դաշնակիցները (գալատացիներ, թրակացիներ, մակեդոնացիներ, բյութանացիներ)՝ 20 հազարից ոչ պակաս [տե՛ս Պ. Սապաղյան, Լուկուլլոսի զինվորներում թիվը Տիգրանակերտի ճակատամարտին (ըստ դրամագիտական տվյալներու), «Հայկազյան հայագիտական հանդես», 1973, հատ. Դ, էջ 97-102: Պ. Հ. Հովհաննիսյան, Հայկական բանակը Տիգրան Մեծի օրոք (թվաքանակի խնդիրը). «Հայկական բանակ-15», հանրապետական գիտաժողովի զեկուցումների դրույթներ, Երևան, 2007, էջ 26-27]: - էջ 488:

25. Պուբլիոս Կլավդիոսը Լուկուլլոսի բանագնաց Ապպիոս Կլավդիոսի ավագ եղբայրն էր, 58 թ. ժողովրդական տրիբուն Հռոմում: - էջ 495:

26. Dividi et impera (լատիներեն) - Բաժանի՛ր և տիրի՛ր: - էջ 497:

27. Ակնարկում է պարթևաց Հրահատ III թագավորին: - էջ 499:

28. Ինչպես արդեն նշել ենք (տես, էջ 599-600, ծան. 39) Տիգրան Կրտսերը չէր կարող լինել Միհրդատ Եվպատորի թոռը, քանզի 82 թ. որպես զորահրամանատար նա արշավել է Սելևկիա, իսկ Տիգրան Մեծի և Կլեոպատրայի ամուսնությունը կարող էր տեղի ունենալ 94 թ. ոչ շուտ, այսինքն՝ նրանց զավակ լինելու պարագային Տիգրան Կրտսերը 82 թ. կարող էր լինել ընդամենը 12 տարեկան: - էջ 499:

29. Տիգրան Կրտսերի կերպարի և գործունեության առնչությամբ գնահատականները լինելով չափազանց ինքնատիպ, այնուհանդերձ, կարոտ են լրացուցիչ փաստարկումների: Մուշեղ Իշխանը, որը 1940 թ. եղել է Ն. Ադոնցի սանը Բրյուսելի համալսարանում, իր ուսուցչապետին նվիրված հուշերում գրում է, թե իրենց անձնական զրույցներից մեկի ժամանակ պրոֆեսորը «Տիգրան Կրտսերին կը նկատեր հաշտարար քաղաքականության կուսակցապետ, ով երբ տեսավ, թե Պոմպեոսը մեկ կողմե և անոր դաշնակից պարթևները մյուս կողմե Տիգրան Մեծը առին երկու կրակի միջև, գնաց հռոմեացիներուն հետ հաշտություն կնքելու» (Մուշեղ Իշխան, Պրոֆ. Նիկողայոս Ադոնց. հուշեր և տպավորություններ, տե՛ս **Մուշեղ Իշխան**, Երեք Մեծ հայեր, Բեյրութ, 1952, էջ 15-16): Ի դեպ, նկատենք, որ նույն՝ 1940 թ. է Ադոնցը շարադրել «Քննական տեսության» մեզ հետաքրքրող հատվածները:

Տիգրան Կրտսերի հետագա ճակատագրի վերաբերյալ տե՛ս լեհ պատմաբան Թ. Լոպոշկոյի «Об интересе римского народного трибуна к армянским делам» հոդվածը («Բանբեր Երևանի համալսարանի», 1980, № 3): - էջ 504:

30. Ad hoc (լատիներեն) - Տվյալ առիթով: - էջ 506:

31. Անկասկած է, որ եթե Պոմպեոսի պոնտական և անդրկովկասյան երթուղիների ուսումնասիրությամբ հանդես եկած Հ. Հ. Մանանդյանը («Маршруты понтийского похода Помпея и путь отступления Митридата в Колхиду, տե՛ս «Вестник древней истории», 1940, № 3-4) և Ստ. Լիսիցյանը («Պոմպեոսի ուղին Անդրկովկասում», տե՛ս Երևանի պետական համալսարանի «Գիտական աշխատություններ», հատ. XXIII, Երևան, 1946) ծանոթ լինեին Ն. Ադոնցի այս հետաքրքիր եզրահանգումներին, ապա նրանք ավելի ճշգրտորեն ու առարկայորեն կարող էին վերարտադրել այդ արշավանքների երթուղիները: - էջ 507:

32. Համապատասխանաբար 50 միլիոն և 85 միլիոն դրաքմե: - Էջ 509:

33. Կարծիք է հայտնվել, թե Պլուտարքոսի բնագրի այս հատվածն աղճատված է և խոսքը վերաբերում է ոչ թե Տիգրան Մեծի, այլ Տիգրան Կրտսերի կնոջը (տե՛ս Հ. Պ. Հակոբյան, Տիգրան Մեծ, Երևան, 2005, էջ 193): - Էջ 509:

34. Տիգրան II-ին նման գնահատական է տվել նաև վաղ կայսերական ժամանակաշրջանի պատմագիր Վելլեոս Պատերկուլոսը՝ «Ժամանակի հզորագույն թագավոր», «թագավորներից մեծագույն» (տե՛ս «Հայ ժողովրդի պատմության քրեստոմատիա», հատ. 1, Երևան, 2007, էջ 361):

Այժմ տպագրվող այս բնագիրը, որ գրվել է ուղիղ 70 տարի առաջ, ցավոք, անծանոթ է մնացել պատմաբաններին և եթե բարեպատեհ առիթ լիներ գրվելուց հետո այն տպագրելու, ապա Արտաշեսյանների պատմաշրջանի շատ իրողություններ այսօր այլ կերպ կմատուցվեին ու կմեկնաբանվեին:

Ն. Ադոնցը Տիգրան II Մեծին է նվիրել նաև նույն՝ 1940 թվականին գրված «Միհրդատ Եվպատոր և Տիգրան Մեծ» գործը (տե՛ս Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ա, Երևան, 2006, էջ 156-168): Չնայած ակնհայտ աղերսակցությանը, երկուսն էլ ինքնուրույն, անկախ երկասիրություններ են: Եվ ընդհանրապես, հրատարակվող բնագրի ուշադիր ընթերցումը թողնում է այն տպավորությունը, որ գործ ունենք նախնական մի տարբերակի հետ, որը պետք է հետագայում վերախմբագրվեր ու վերաշարադրվեր: Բայց դա, հասկանալի պատճառներով, տեղի չի ունեցել:

Բացի արդեն տպագրված բնագրից, պատմաբանի թողոնում առկա են նաև նույն թեմային նվիրված «Լուկուլլոսի և Պոմպեոսի արշավանքները Հայաստան ըստ Դիոն Կասսիոսի» թերի ուսումնասիրությունը (20 էջ), ինչպես նաև «Տիգրան Մեծն ըստ Մոմզենի և Ռեյնաքի» (40 էջ), «Անտիկ սկզբնաղբյուրներից քաղված վկայություններ Տիգրան Մեծի վերաբերյալ» (60 էջ): Բոլորն էլ ֆրանսերեն են, սևագիր (տե՛ս պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զգրոց Բ, թղթածրար 2): - Էջ 509:

## II. ԿՐԱՍՍՈՍՆ ԸՆԴԴԵՄ ՊԱՐԹԵՎՆԵՐԻ
### (Ըստ սկզբնաղբյուրների)

(էջ 513)

Գրված է 1940-1941 թվականներին, Բրյուսելում: Ֆրանսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի պահոցի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, զգրոց Բ, թղթածրար 2): Բնագիրը, որն ունի 23×30 սմ մեծություն, գրված է 11 թերթիկների վրա: Լինելով սևագիր տարբերակ, գրված է անփույթ ձեռագրով, ուղեկցող հապավումներով ու ջնջումներով:

Տպագրվում է Ս. Ս. Խաչատրյանի թարգմանությամբ: